

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

**Մայի՛ս է, մայի՛ս...**
**Լանջերին լեռան**
**Ալ կակաչները ծփում են հովից,**
**Մեր կանա՜չ, կանա՜չ**
**Դաշտերի վրա**
**Երգում են ուրախ հավքերը թռվիչ:**

**Փոխել են ջրերը**
**Իրենց հին ճամփան,**
**Նոր առուներ են դաշտերով վազում,**

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՆԱՆՈՒՇՅԱՆԻ



Երրորդ հարկի պատուհանից հեշտությամբ կարելի էր տեսնել փողոցն ու դիմացի շենքի առաջին հարկը, որտեղ գտնվում էր «ՄԱՆԿԱԿԱՆ ԽԱՂԱԼԻՔՆԵՐ» խանութը. դրա համար հարկավոր էր միայն շրջվել և մի փոքր ծռել վիզը: Բայց տղան, ինչպես երբեք, վախենում էր այդ անել: Բացի այդ, դպրոցում սովորելու ութ տարիների ընթացքում դա առաջին դեպքն էր, երբ նա նստած էր դեմքով ոչ թե դեպի գրատախտակը, այլ մեջքը դեպի լուսամուտն արած, իսկ դիմացը դասասենյակի դուռն էր: Դրսի կողմից այդ դռան վրա փակցված էր «ՉԽԱՆԳԱՐԵԼ՝ ՔՆՆՈՒԹՅՈՒՆ Է»:

Քննություն էր, և ութ տարիների ընթացքում լավ ծանոթ դպրոցական կյանքն ու օրենքները դուրս էին եկել սովորական հունից: Երկու նստարաններ առանձնացվել էին շարքերից ու դրվել մեկը լուսամուտի մոտ, մյուսը՝ պատի տակ, իրարից ու մյուս բոլոր նստարաններից հեռու: Լուսամուտի մոտ նստած տղան երբեմն շրջում էր գլուխն ու նայում նստարանների շարքերին, որտեղ նստած էին ընկերները, և տեսնում էր իրեն նայող բազմաթիվ աչքեր: Տղան նախանձում էր այդ տղաներին ու աղջիկներին, որոնք ութ երկար տարիներ իր ընկերներն էին եղել և որոնցից այսօր իրեն բաժանել էին ու նստեցրել մենակ, առանձին նստարանի վրա:

Տղան հիշում էր, որ քիչ հետո քննություն է հանձնելու, և կախում էր գլուխը: Նա կարդում էր տոմսի երեք հարցերը, փորձում գտնել հարցերի պատասխանները և նրան թվում էր, որ դրանցից ոչ մեկն էլ չգիտի: Բայց նա գլուխը հենում էր բռունցքներին ու իրեն ստիպում մտածել: Իսկ կենտրոնանալ ոչ մի կերպ չէր հաջողվում: Նրա գլխում սկսում էին պտտվել ուրիշ մտքեր, քննությունից հետո կապ չունեցող, և նա ավելի էր համոզվում, որ մոռացել է գրեթե բոլորը:



ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Դասասենյակում, որ այսօր դարձել էր քննասենյակ, հանդիսավոր էր ամեն ինչ: Հանդիսավոր էր կարմիր սփռոցով ծածկված երկար սեղանը, որի մոտ նստած էին ուսուցիչները, քննասենյակի մաքուր լվացված ու փայլող հատակը, ընկերների փոխված դեմքերը և քար լռությունը: Դպրոցում սովորելու ութ տարիների ընթացքում ոչ մի դասի ժամանակ դեռ երբեք այդպիսի լռություն չէր տիրել:

Օրը նույնպես հանդիսավոր էր սկսվել: Մայրը տղային մաքուր վերնաշապիկ էր հագցրել, իսկ երբ տղան պատրաստվում էր դուրս գալ, հայրը թփթփացրել էր ուսին ու ասել.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ
Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ
ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ




**Լեռների գրկում
Ձյուներից ծնված,
Նոր լճակներ են ծփծփում լազուր:**

**Նոր այգիներ են
Ծաղկել այս գարնան,
Լեռնաշխարհը մեր զուգվել է նորով,
Ու նոր երգեր են
Հյուսվել այս գարնան,
Որ թևածում են մեր հովիտներով:**

**Մայի՛ս է, մայի՛ս...**

**Այս մայիսի մեջ
Լույսի ձայներ կան, անծանոթ ձայներ,
Մեր երազանքը
Գարնան հովի պես
Անցնում է լեռներ, ծովեր, սահմաններ:**

**Մայիսը միայն
Տոն չէ զարթոնքի՝
Կանաչի, ծաղկի և ուրախության.
Նա հզոր ուժն է
Մեր հայրենիքի,
Մեծ հաղթանակի և ազատության:**

*— Տե՛ս, ամոթով չմնաս:*

*Եթե հայրը թփթփացրել էր ուսին, նշանակում է, տղային արդեն մեծ մարդ էր համարում: Հայրը այդպես էր վարվում հորեղբայր Պողոսի հետ, երբ սա գնում էր գործուղման. թփթփացնում էր ուսին և ասում. «Բարի ճանապարհ»: Այսօր էլ թփթփացրել էր տղայի ուսին ու ասել. «Տե՛ս, ամոթով չմնաս»: Եվ տղան, որ իր բոլոր հասակակիցների նման միշտ ձգտել էր մեծ երևալ,*




Նկ. ՎԱԶԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

*վախեցավ: Իսկ հայրը նորից թփթփացրեց ուսին, ճիշտ և ճիշտ ինչպես մեծ մարդու ուսին են թփթփացնում և ավելացրեց.*

*— Ամեն մարդ կյանքում վաղ թե ուշ տալիս է իր առաջին քննությունը: Դե, աշխատիր պատվով դուրս գալ:*

*Տղան առաջին անգամ ցանկացավ փոքր լինել: Եթե փոքր լիներ, հայրը ոչինչ չէր պահանջի: Իսկ հիմա հայրը պահանջում էր և սպասելիքներ ուներ: Տղան գնում էր փողոցով ու նախանձում հանդիպող մարդկանց. այդ մարդիկ չէին պատրաստվում առաջին քննությունը հանձնել կամ էլ հանձնել էին վաղուց: Երբ նրանք տնից դուրս էին եկել, ոչ որ չէր թփթփացրել նրանց ուսին ու ասել. «Տե՛ս, ամոթով չմնաս»:*

*Դպրոցի մոտերքը տղան անցավ այն խանութի կողքով, որի ճակատին մեծ ու գեղեցիկ տառերով գրված էր.«ՄԱՆԿԱԿԱՆ ԽԱՂԱԼԻՔՆԵՐ»: Նա չէր հիշում, թե իր՝ դպրոցում սովորելու ո՛ր տարում էր, երբ հսկայական ցուցափեղկերից մեկում հայտնվեց խաղալիք-երկաթուղին: Դա խանութում եղած խաղալիքներից միակն էր, որ չէր վաճառվում, և այստեղ էր դրվել ցուցափեղկը գեղեցկացնելու ու մարդկանց հետաքրքրելու համար: Բայց բոլոր դեպքերում այդ խաղալիքով կարելի էր հիանալ օրվա բոլոր ժամերին և սրտի ուզածի չափ: Իսկ հետաքրքրությունը խաղալիք-երկաթուղու նկատմամբ տարիների հետ չէր նվազում: Օրվա մեջ երկու անգամ տղան տեսնում էր այն՝ դպրոց գնալիս և վերադառնալիս: Մեկ-երկու րոպե կանգնում էր ցուցափեղկի առաջ, ապա հեռանում: Տարվա մեջ մի քանի անգամ, գլխավորապես տոն օրերին երկաթուղին աշխատում էր: Փոքրիկ էլեկտրաքարշը քաշում էր երեք կանաչ*

վազողները, և գնացքը մտնում էր թունելի մեջ, դուրս գալիս մյուս կողմից: Սլաքավարը բարձրացնում էր ձեռքը, և նրա ձեռքում վառվում էր լապտերիկը: Իսկ կանաչ վագոններով գնացքը անցնում էր նրա կողքից, շարունակում իր ճանապարհը: Խաղալիք երկաթգծի երկու կողմերում դեղնավուն-կանաչ բլրակներ կային, փոքրիկ ծառեր ու տնակներ և հատապտուղ հավաքող բոլորովին փոքրիկ մի աղջիկ, որ զարմացած գնացքին էր նայում: Հետո կանաչ գնացքը նորից անցնում էր թունելով, դուրս գալիս մյուս կողմից և սլաքավարի ձեռքում դարձյալ ճոճվում էր լապտերիկը:



Ցուցափեղկի մոտ առանձնապես շատ էին հավաքվում այդ օրերին: Առաջին դասարանցիները ավելի մեծահասակների թևերի տակով աշխատում էին առաջ խցկվել, իսկ սրանք նրանց հետ էին հրում: Փոքրիկներին հրում էր և տղան: Նա միշտ էլ կարողանում էր այնպես անել, որ կանգնի բոլորից առաջ, կենտրոնում, իսկ այդ օրերին կանգնում էր երկար: Ցուցափեղկում երևի հարյուրերորդ անգամ կրկնվում էր նույն բանը, իսկ նա չէր ձանձրանում կանաչ վագոններով գնացքին նայելուց:

Երբ այսօր առավոտյան տղան կանգնեց ցուցափեղկի մոտ, կանաչ վագոններով գնացքը, իհարկե, անշարժ էր: Մի քանի վայրկյան նա հիանում էր կանաչ վագոններով, սլաքավարով, ծառերով ու դեղնավուն-կանաչ բլրակներով: Հետո տղան սրտում ինչ-որ ծանրություն զգաց: Հիշեց քննությունը: Քննությունն և կանաչ վագոններով գնացք: Ինչ-որ չէին համապատասխանում իրար: Նրան թվաց, որ իրենից խլում են գնացքն ու փոխարենը տալիս այդ քննությունը: Նա այդ փոխանակությունը չէր ուզում: Նույնիսկ փորձեց ընդդիմանալ ու երկար կանգնել ցուցափեղկի մոտ, անգամ ձանձրանալ ու չնայել գնացքին, բայց կանգնել: Սակայն քննությունը պարտականության նման քաշում էր նրան, ու տղան գնաց դպրոց:

Հիմա էլ, նստած բոլորից հետո, առանձին նստարանի վրա, նա կարող էր տեսնել «ՄԱՆԿԱԿԱՆ ԽԱՂԱԼԻՔՆԵՐ» խանութը: Դրա համար հարկավոր էր միայն շրջվել և մի փոքր ձգել վիզը: Բայց հիմա հարկավոր էր պատրաստվել հարցերին, և նա տասներորդ անգամ կարդում էր դրանք ու պատասխանները չէր գտնում:

Մի ժամ առաջ, երբ նա մտել էր դպրոց, սիրտը սկսել էր խփել անհանգիստ ու արագ: Հետո բոլորը տեղավորվեցին քննասենյակում, եկան ուսուցիչները, նստեցին երկար սեղանի առաջ, ու սկսվեց քննությունը: Առաջինը Սաթենիկին կանչեցին, երկրորդը՝ տղան էր: Երբ նա մոտեցավ քննական սեղանին հարցատոմս վերցնելու, սիրտը ավելի անհանգիստ տրոփեց: Նա երկար ժամանակ չէր կողմնորոշվում, թե որ տոմսը քաշի, ուրախությամբ կհրաժարվեր այդ սպիտակ ու խորամանկ թղթերին դիպչելուց, բայց նահանջելն անհնար էր: Հետո, երբ արդեն տոմսը քաշած նա նստեց պատուհանի մոտի նստարանի վրա, սիրտը շարունակում էր արագ-արագ խփել ու շունչը դեռ կտրվում էր: Բայց շատ շուտով տղան հանգստացավ: Հանգստացավ, երբ նրան թվաց, որ հարցերի պատասխանները գրեթե գիտի: Նա արդեն չէր կասկածում, որ «կտրվելու է», և դարձավ անտարբեր: Նույնիսկ սկսեց զարմանալ, որ տոմս քաշելու ժամանակ ինչը վախեցել է: Ախր

դա՛ շատ հասարակ բան էր. մտածում ես, վերցը- նում խաղալիքային թերթիկներից մեկը, իսկ հետո գալիս նստում նստարանին։ Ամենասովորական մի բան, որը, չգիտես ինչու, հանդիսավոր կերպով էին կատարում։

Իսկ Սաթիկն արդեն պատասխանում էր առաջին հարցին. «Ազատության զանգ, դա մեծ զանգն է»,— արտասանում էր նա։ Տղան սկսեց ականջ դնել Սաթիկին։ Աղջիկն այնպես ազատ ու համարձակ էր արտասանում, որ տղան մինչև անգամ զարմացավ։ Ուսուցիչները Սաթիկից գոհ մնացին։ Նա անցավ երկրորդ հարցին և դարձյալ խոսում էր համարձակ, առանց շփոթվելու։

Տղան մտածեց, որ ինքը երբեք չի կարողանա այդպես պատասխանել։ Նա համոզված էր, որ ինքը շփոթվելու է, մոռանալու է նաև իմացածը և պատասխանը չի հասցնելու մինչև վերջ։

Սաթիկը շատ արագ էր խոսում։ Ուր որ է, նա կանցներ երրորդ հարցին, դա էլ կվերջացներ և կգար տղայի հերթը։ Տղան հիմա ամեն ինչ կտար, միայն թե Սաթիկը խոսեր դանդաղ, ամեն ինչ կտար, միայն թե իր հերթը երբեք չհասներ։

Սաթիկը վերջացրեց և կարմրած ու ժպտալով դուրս փախավ քննասենյակից։ Տղայի անտարբերությունից այլևս հետք չմնաց և նրա սիրտը սեղմվեց։ Մինչ հաջորդ աշակերտը տոմս էր քաշում, նա՛ տենդագին, վերջին անգամ նայում էր հարցերին ու չհասցրեց որևէ նոր բան հիշել։ Նույնիսկ ավելին, թվաց, թե մոռացավ անգամ այն մի քիչը, որ գիտեր։

— Պատրա՞ստ ես, Աշոտ,— հարցրեց ուսուցիչը։

Տղան համոզված էր, որ ինքը պատրաստ չէ, բայց ասաց.

— Պատրաստ եմ։

Նա վերցրեց հարցատոմսը, այն մի թերթ թուղթը, որի վրա պետք է նշումներ կատարեր, բայց որը այդպես էլ մաքուր էր մնացել և մնացավ կարմիր սփռոցով ծածկված քննասեղանին։

— Դու նշումներ չե՞ս արել,— վերցնելով նրա ձեռքից թուղթը, հարցրեց ուսուցիչը։

Տղան գլուխը շարժեց։

— Երևի լավ գիտե ու վստահ է իր վրա,— ասաց դիրեկտորը, և տղան տեսավ, որ նա մեղմաբար ժպտում է իրեն։

Դիրեկտորի ասածը այնքան հեռու էր իրական լինելուց, որ տղան ինքն էլ ժպտաց։ Բայց նա հասկացավ, որ թե՛ դիրեկտորը, թե՛ ուսուցիչները ինչ-որ սպասելիքներ ունեն իրենից։ Նա ետ նայեց ու տեսավ ընկերների՝ իրեն ուղղված հայացքները։ Դիրեկտորի ժպիտը, ընկերների հայացքները ասում էին նույնը, ինչ առավոտյան ասել էր հայրը. «Տե՛ս, ամոթով չմնաս»։

— Չշտապես,— զգուշացրեց ուսուցիչը,— պատասխանիր հանգիստ ու առանց շտապելու։

Իսկ տղան բոլորովին չէր շտապում։ Եվ քանի որ նա լռում էր, քննարկան դասասենյակում լռությունը ավելի ճնշող էր դառնում։ Վերջապես նա խոսեց։ Խոսեց, որովհետև այլևս ուշացնել չէր կարելի։ Բացի դրանից ավելի լավ էր սխալ բաներ ասել, քան հիմարի պես լռել։ Նա շարունակում էր իր դանդաղ ու կցկտուր խոսքը և զարմանքով



տեսնում, որ ոչ ոք չի ընդհատում իրեն։ Բայց զարմանքն ավելի մեծացավ, երբ վերջապես համարձակվեց բարձրացնել աչքերն ու տեսավ, որ ուսուցիչը գլխի շարժումով հաստատում է իր ասածները։ Դա այնքան անսպասելի էր, որ տղան քոեց։

— Հարցին ճիշտ ես պատասխանում,— ասաց ուսուցիչը,— միայն ավելի համարձակ խոսիր։

Տղան անակնկալի եկավ։ Կարմիր սփռոցով ծածկված քննասեղանի մոտ նստածները, որոնց ինքը հանձնում էր առաջին քննությունը, պատրաստ էին օգնել իրեն։ Եվ նա շարունակեց խոսել, ամեն քայլ սպասելով, թե որտեղ է վերջապես կանգ առնելու և չի կարողանալու շարունակել։ Բայց այդ պահը ուշանում էր։ Նա նույնիսկ համարձակվեց մի հատված մեջ բերել անգիր։ Այդ հատվածը քիչ առաջ չէր հիշել, բայց հիմա կարողացավ։ Ուսուցիչը դարձյալ գլխով էր անում, իսկ դիրեկտորը ժպտում էր։ Տղան անցավ երկրորդ հարցին։ Նա զգաց, որ արդեն խոսում է համարձակ ու ազատ, արագ, նույնիսկ մի քիչ ավելի արագ, քան պետք էր։

Տղան այլևս չէր վախենում, որ կշփոթվի: Բայց [illegible] ինչ-որ [illegible], իրեն [illegible]:

[illegible] պատասխանելիս տղան [illegible], որ դրանում մեղավոր է [illegible] նախադասություն վերլուծելիս ինչ-որ բան չէր ասացել: Եվ նա գրատախտակի մոտ կանգնած հասցրեց մտածել, որ եթե ինքը մի քիչ [illegible] լավ պատրաստված լիներ, նախադասությունն էլ կկարողանար հաջող վերլուծել:

[illegible] օգնությամբ նա վերջացրեց վերլուծությունը և հոգնած ժպտաց: Տղային հարցեր [illegible], և նա կարողացավ պատասխանել: Հիմա [illegible] նրան թվում էր, որ չկա այնպիսի հարց, որի պատասխանը չիմանա:

Տղան հանձնեց հարցատոմսն ու ընկերների հաջորդների մոտ դուրս եկավ: Կրծքի մոտ նա ինչ-որ արտակարգ թեթևություն էր զգում: Այդպիսի թեթևություն չէր զգացել երբեք: Միջանցքում կանգնած էր Սաթիկը: Տղան նրան ոչինչ չկարողացավ ասել ու միայն ժպտաց:

— Վախենում էիր,— հարցրեց Սաթիկը:

— Ոչ,— ասաց տղան,— իսկ դու:

— Վախենում էի:

— Իսկ ես բոլորովին,— և տղան նորից ժպտաց, որովհետև ստում էր:

Բայց անմիջապես էլ նա մտածեց, որ այնքան էլ չի ստում, որովհետև արդեն գիտեր, որ չպետք է վախենալ: Ուղղակի դա կյանքում առաջին քննությունն էր, դրա համար էլ դժվար էր մի քիչ: Բայց ոչ մի քննություն էլ սարսափելի չէ, եթե մարդ պատրաստ է զգում իրեն:

— Իսկ ես վախենում էի,— կրկնեց աղջիկը,— սարսափելի էր ու դրա համար էլ այդքան արագ էի խոսում:

Տղան ժպտաց: Նա անվերջ ժպտալու ցանկություն ուներ: Դռնակները բռնելով՝ նա զգաց մի երկուհարկանոց դրան և բակի մեջ սեղմած ցած վազեց: Նա դուրս եկավ դպրոցի շենքից, անցավ մայթը և մտավ հեռախոսի խցիկը: Բայց հեռախոսը սարքին չէր, կոպեկանոցը չխկաց անհետացավ, և նա չկարողացավ տուն զանգահարել: Տղան ամենևին չվշտացավ: Նա հենց այնպես, մի երկու անգամ թխկթխկացրեց ու ապարատին և դուրս եկավ:

Նա բակից մայթի երկայնքով, իսկ երբ հասավ «ՄԱՆԿԱԿԱՆ ԽԱՂԱԼԻՔՆԵՐ» խանութին, կանգնեց: Կանաչ վագոններով գնացքը իր տեղում էր: Գընացքը կանգնեցրել էին այն պահին, երբ նա անցնելիս էր եղել թունելով, և վերջին վագոնը թունելի մեջ էր: Գնացքը չէր պտտվում, չէր վառվում լուսարձակի լապտերիկը, բայց բլրակները էլի գեղեցիկ-կանաչ գույն ունեին, փոքրիկ ծառերը դարձյալ գեղեցիկ էին, իսկ աղջիկը, ինչպես միշտ, հրաշալի:

Տղան երկար, շատ երկար կանգնեց ցուցափեղկի մոտ: Եվ նրան սկսեց թվալ, որ կանաչ վագոններով գնացքը թեև առաջվա նման սիրելի է, բայց կարծես կամաց-կամաց հեռանում է իրենից: Նրան թվաց, որ կանաչ վագոններով գնացքը իր անցյալն է, իսկ ներկան, դա առաջին քննությունն էր, առաջին վախը և առաջին հաղթանակը:

Տղան առաջին անգամ ցուցափեղկի մոտից հեռացավ առանց ափսոսանքի: Կանաչ վագոններով գնացքը սքանչելի էր, բայց տղան նրա անհրաժեշտությունը առաջվա նման չէր զգում: Նա ուղղվեց բակից դեպի դպրոց, բարձրացավ երրորդ հարկ և կանգ առավ միայն քննասենյակի դռան մոտ, ամբողջ ժամանակ իրեն զգալով իսկապես մեծացած:

## Մանուշակը

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՏԱՐՈՆ

Ձնծաղկի հետ ճերմակ, անփույթ,
Մրսում, մրսում են, դողդողում
Թերթիկները նրա կապույտ:

Իսկ վարդի հետ վառ, թրթռուն
Այրվում, կիզվում են շարունակ
Թերթիկները կապույտ, խռնուն:

Բայց չկարծեք, թե չունենա
Համեստ ու հեզ ծաղիկն այդ լուրթ,
Բուրելու օր ու ժամանակ:

Ոչ, մանուկներ իմ սիրելի,
Ձնծաղկի պես, վարդի պես հուր,
Բուրում է նա վառ ապրիլին:

Ծաղկում, փթթում, վառվում է հեզ
Ու պարգևում իր բույրը մեզ:

50 ՏԱՐԻ







# ԱՏԱՄՆԱԲՈՒՅԺԻ ՍՊԱՍԱՍՐԱՀՈՒՄ

*ՄՈՏԻԼԱՎՍԿԻ*

Յուրաքանչյուր բանվոր պետք է լավ հասկանա, որ երջանիկ ապագայի միակ ճիշտ ճանապարհը պայքարն է...

Դռան թակոցը ընդհատեց Բաումանին: Նա նայեց իր շուրջը նստածներին և ապա դառնալով դեպի ատամնաբույժը, որի սպասասրահում հաճախ գաղտնի հավաքույթներ էին կազմակերպում, հարցրեց.

— Դուք սպասու՞մ էիք որևէ այցելուի:

Բոլորը հասկացան, թե ինչ է նշանակում Բաումանի հարցը: Նրանք նույնիսկ չխոսեցին միմյանց հետ, գիտեին իրենց անելիքը: Մեկը բժշկի հետ արագ անցավ ընդունարան, մյուսներն էլ նստեցին պատի երկայնքով դրված աթոռներին, ձևանալով, թե հիվանդ են և սպասում են հերթի:

Երբ ամեն ինչ պատրաստ էր, բուժքույրը գնաց դեպի դուռը, որպեսզի ստուգի, թե ով էր թակում, և քիչ հետո վերադարձավ մի անսպասելի այցելուի հետ, որը փորձում էր մտնել բժշկի ընդունարանը:

— Այդ ի՞նչ եք անում, չէ՞ որ ձեր հերթը չէ,— ասաց դ.ան մոտ նստած այցելուներից մեկը:

— Ես չեմ կարող սպասել, իմ ատամը շատ է ցավում,— ասաց անծանոթը և արագ նայեց բոլորին:

Բաումանը, ձևացնելով, թե թերթ է կարդում, նույնիսկ ձեռքը չհեռացրեց, որ նայի տարօրինակ այցելուին: Բայց նա կարողացավ պարզ տեսնել անծանոթի դեմքը և անմիջապես ճանաչեց նրան, դա մի լրտես էր, որին առաջ հաճախ էր տեսնում: «Հետը տեսնես ստիկաններ կա՞ն»,- մտածեց նա:

Բաումանը նայեց նորեկին և, որքան կարող էր, քաղաքավարի ու հանգիստ ասաց.

Խնդրեմ, մենք չենք առարկում, եթե բժիշկը համաձայն է ձեզ առաջինը ընդունել, մենք կարող ենք սպասել, քանի որ ձեր ատամները շատ են ցավում:

Լրտեսը շփոթվեց: Այդ ժամանակ բժշկի ընդունարանի դուռը բացվեց և բժիշկը ներս հրավիրեց հաջորդ այցելուին: Բաումանը, որ շարունակում էր հետևել լրտեսին, հանկարծ ասաց.

— Եթե մեկի ատամը շատ է ցավում, պետք է անմիջապես հեռացնել այն:

Քիչ հետո լրտեսն արդեն նստել էր բժշկի բազկաթոռին: Բժիշկը մեծ ուշադրությամբ քննեց նրա ատամները և քառորդ ժամ հետո լրտեսին ցույց տվեց երկու մեծ, դեղնած ատամ ու ասաց.

Բավական բարդ աշխատանք էր: Ավելի ուշադիր եղեք դեպի ձեր ատամները: Տվեք խնդրեմ տասը ռուբլի:

Լրտեսը շփոթված, լուռ կանգնել էր:

— Էլի՞ որևէ բան էիք ցանկանում,— հարցրեց բժիշկը:

Լրտեսը ոչինչ չպատասխանեց, վճարեց փողը և դուրս եկավ: Նա կարծում էր, որ սպասասրահում ոչ ոք չի լինի, բայց բոլորն էլ նստած էին իրենց տեղում: Լրտեսն այլևս ոչինչ չէր կարող անել: Երբ նա արդեն հեռացել էր, նստածներից մեկն ասաց.

— Բարեբախտաբար լրտեսը հիվանդ ատամներ ուներ:

— Ո՞վ ասաց... նա հիմա երկու առողջ ատամ պակաս ունի քան առաջ, բացատրեց բժիշկը և ավելացրեց.- Եվ դա, իհարկե, նրա համար այնքան էլ թանկ չնստեց՝ ընդամենը տասը ռուբլի:

Բոլորը ծիծաղեցին, իսկ Բաումանն ասաց.

— Սա լավ դաս էր նրա համար: Նրանք այդպես կկորցնեն իրենց ատամները, եթե կռվեն մեր դեմ: Ես համոզված եմ, որ սրանից հետո նա չի գնա և չի զեկուցի ոստիկանությանը: Հիմա մենք կարող ենք շարունակել մեր հավաքույթը:

*Թարգմ. Կ. ՍԱՐԳԱՋՅԱՆ*




*ՎԱՀԱՆ ՍԱՐԳՍՅԱՆ*

*Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՆԱՆՈՒՇՅԱՆԻ*

Պատերազմ էր: Ամեն օր սպանվում էին քանի՜-քանի՜ մարդիկ, որբանում էին շատ երեխաներ, ավերվում էին գյուղեր ու քաղաքներ: Այդ ժամանակ ես, Վաղարշակը, Շուշիկը, Զարվարդը ֆաշիստական Գերմանիայում էինք: Ապրում էինք ռազմագերիների ճամբարում: Մեր ճամբարը Բեռլինի մոտ էր, անտառի մեջ, բոլոր կողմերից փշալարերով շրջապատված: Իսկ ֆաշիստական զինվորները ու կատաղի շները գիշեր-ցերեկ հսկում էին ճամբարը, որ գերիները չփախչեն:

Մեր ճամբարում միայն Շուշիկն ու Զարվարդն էին աղջիկ: Մեզանից ամեն մեկը Շուշիկին ու Զարվարդին համարում էր իր քույրը: Ահա մի գիշեր նրանց տեղափոխեցին: Շատ տխրեցինք, նույնիսկ լաց եղանք: Բայց ի՞նչ կարող էինք անել, չէ՞ որ գերիներ էինք: Շուտով Վաղարշակին նույնպես տեղափոխեցին: Երկար տխրելու ժամանակ չունեցա: Երկու օր հետո մի սպայի հետ ճամբար մտավ կարճահասակ, բազուկի նման կարմիր դեմքով մի մարդ, բռնեց թևիցս, նստեցրեց ծածկած ավտոմեքենան ու տարավ: Իջանք Ռայնսբերգ գյուղաքաղաքում, բարձր երկհարկանի տան առաջ: Մտանք բակ:

— Դու հիմա իմ աշխատողն ես. հասկացա՞ր, իմ անունը Կրաուզե է, — ասաց նա:

Դրանից հետո ամբողջ օրը աշխատում էի դաշտում, ինչ ծանր գործ կար, ես էի կատարում, բայց կալվածատեր Կրաուզեն դժգոհ էր: Պատժելու համար հաճախ ինձ սոված էր թողնում, երբեմն ստիպում էր գիշերները աշխատել: Աշխատում էի ու մտածում փախուստի մասին: Չէ՞ որ այժմ զինվորների ու շների փոխարեն ինքն էր հսկում ինձ: Երբ աշխատանք չէր լինում, բռնում էր թևիցս, հրում նկուղ ու դրսից դուռն ամուր փակում: Բայց որքան չար էր Կրաուզեն, նույնքան բարի էր նրա փոքր աղջիկ Գրետխենը: Երբ բոլորը քնում էին, նա դռան ճեղքից ինձ հաց էր տալիս:

— Շնորհակալ եմ, Գրետխեն — ասում էի ես, իսկ նա նայում էր ինձ ու ժպտում:

Շատ էի մտածում, թե ինչ եղավ Վաղարշակը, որտեղ են Շուշիկն ու Զարվարդը, արդյոք ինձ կըհաջողվի՞ փախչել Կրաուզեի ճանկերից: Մի անգամ կալվածատիրոջ հետ գնացինք Նոյրուպին՝ աղյուս բերելու: Փողոցում տեսա Շուշիկին ու Զարվարդին, դույլերով ջուր էին տանում հիվանդանոց: Նրանք աշխատում էին այդտեղ: Ինձ թվաց հանդիպեցի տարիներով կորցրած քույրերիս: Նրանք նույնպես ուրախացան: Կրաուզեի հետ վերադարձանք Ռայնսբերգ:

«Փախչել, պետք է փախչել», — մտածում էի ես և սպասում հարմար ժամանակի:

Մի օր ես ու Կրաուզեն դաշտից շուտ վերադարձանք: Գրետխենը գաղտագողի մոտեցավ ինձ ու ասաց.

— Քեզ նամակ է եկել, ահա՛:

Զարմացա: Չէ՞ որ այդ ժամանակ ոչ ոք ինձ նամակ չէր գրում: Բացեցի ծրարը: «Վահան, շտապ արի, եղբայրդ այստեղ է», — գրում է Շուշիկը:

Մի քանի անգամ կարդացի նամակը: Հուզմունքից սիրտս թրթռում էր: Ամբողջ գիշեր չքնեցի: Մյուս օրը կեսօրին կալվածատիրոջից գաղտնի գնացի Նոյրուպին:

— Որտե՞ղ է եղբայրս, — հիվանդանոցի բակում հանդիպելով Շուշիկին՝ հարցրեցի ես:

— Գնանք, — ժպտալով ասաց նա:

Եկավ նաև Զարվարդը: Աստիճաններով իջանք հիվանդանոցի նկուղը: Երբ Շուշիկը բացեց դուռը, մթության մեջ տեսա մի ծանոթ դեմք:

— Վաղարշա՛կ,— հազիվ ճիչս զսպելով ասացի ես:

— Վահա՛ն, սիրելի՛ս,— ասաց նա:

Մենք գրկախառնվեցինք: Հանկարծ տեսա անկյունում նստած մի աղջիկ, որն ուշադիր նայում էր մեզ:

— Ծանոթացի՛ր,— ասաց Վաղարշակը:

— Անտոնինա Իվանովնա,— իր անունը հայտնեց անծանոթ աղջիկը:

Վաղարշակը պատմեց, որ մեր ճամբարից տեղափոխվելուց հետո լեհական պարտիզանների օգնությամբ իրեն հաջողվել է անցնել ռազմաճակատից: Մեկ ամիս եղել է հայրենիքում: Եվ ահա երեկ ինքը և Անտոնինան պարաշյուտով իջել են անտառում: Հայրենիքից իրենց հետ բերել են ռադիոհաղորդման ապարատ, զենք, դրամ, կեղծ փաստաթղթեր, քարտեզներ, պայթուցիկ նյութեր: Նրանք այժմ սովետական հետախույզներ են: Վաղարշակի հետախուզական անունն է «Արարս», իսկ Անտոնինայինը՝ «Վեներա»:

— Վահա՛ն, այժմ դու մեզ պետք է օգնես,— ասաց Վաղարշակը: — Պետք է ռազմական նշանակություն ունեցող տեղեկություններ հայտնենք մեր բանակին և արագացնենք հաղթանակը: — Ես զմայլված լսում էի Վաղարշակին: Թվում էր, թե երազ էր:

— Վաղարշա՛կ, մեր բանակը ե՞րբ կհասնի այստեղ, ի՞նչ նորություններ կան հայրենիքում, տուն նամակ գրեցի՞ր, որ կենդանի ես, Երևանում եղա՞ր:— Իրար հետևից անհամբերությամբ հարցրեցի ես:

Նա ու Անտոնինան ժպտում էին:

Ես այլևս չվերադարձա կալվածատեր Կրաուզեի մոտ: Այստեղ ինձ համար հուսալի փաստաթղթեր պատրաստեցին ու նոր զգեստներ գնեցին: Դրանից հետո ես ու Վաղարշակը շրջում էինք Գերմանիայում, ուշի-ուշով հետևում, թե որտեղ են կենտրոնացված ֆաշիստների զորամասերը, տանկային միավորումները, որտեղ են գտնվում նրանց ռազմական գործարաններն ու օդանավակայանները: Կարևոր տեղեկությունները հանձնում էինք Անտոնինային, իսկ նա ծածկագրում ու հիվանդանոցի նկուղից հաղորդում էր հայրենիքում մեզ սպասող ռադիոկայանին: Դրանից հետո մեր ինքնաթիռները ռմբակոծում էին ֆաշիստների գործարանները, օդանավակայանները, ռումբեր նետում նրանց զինվորական միավորումների վրա: Ամենից դժվարը Անտոնինայի գործն էր: Հեշտ չէր հաղորդումները ծածկագրել, հետո դրանք հաղորդել, վերծանել հայրենիքից ստացված ծածկագրերը ու միշտ մնալ կիսամութ նկուղում: Հապա վտա՞նգը: Չէ՞ որ հաղորդումների ժամանակ ֆաշիստների ռադիոձայնորսիչներն ամեն րոպե կարող էին հայտնաբերել նրան ու վերջ... Քուն ու հանգիստ չուներ Անտոնինա Իվանովնան՝ հետախույզ «Վեներան»:

— Տոնինա՛, շատ ես աշխատում, հանգստացիր,— հաճախ ասում էինք մենք:

— Ոչինչ, հաղթանակից հետո հանգստանալու համար շատ ժամանակ կլինի,— ժպտալով պատասխանում էր նա ու շարունակում իր գործը:

Հաղորդումների ընթացքում մեզանից մեկնումեկը դրսից հսկում էր և վտանգի դեպքում ազդանշան տալիս: Չնայած մեր մեծ զգուշությանը, մի անգամ քիչ մնաց ընկնեինք ֆաշիստների ձեռքը: Ահա թե ինչպես:

Ցերեկվա ժամը երեքն էր: Վաղարշակը գնացել էր կայարան: Կարևոր հաղորդում տալու համար Անտոնինան նորից կապվել էր հայրենիքի հետ: Ես կանգնել էի հիվանդանոցի պատի տակ և ուշադիր նայում էի շրջապատին: Հանկարծ մի քանի ծածկած ավտոմեքենաներ կանգնեցին հիվանդանոցի մուտքի առաջ: Մի խումբ զինվորներ ու քաղաքացիական հագուստով մարդիկ դուրս եկան մեքենաներից ու շրջապատեցին հիվանդանոցի շենքը: Կարմիր թաշկինակով երեք անգամ սրբեցի երեսս: Նկուղի դռանը կանգնած Զարվարդը հասկացավ ինձ ու ներս գնաց: Ես անմիջապես մտա մոտակա մթերային խանութը ու ցուցափեղկի հետևից սկսեցի ուշադիր նայել, թե ինչ է կատարվում հիվանդանոցի բակում: Սիրտս տեղից դուրս էր գալիս: Մի՞թե ամեն ինչ վերջացավ, մի՞թե Անտոնինան ընկավ նրանց ճանկը, մի՞թե... ու վայրկյանները ժամեր թվացին:

Հանկարծ տեսա, թե ինչպես Անտոնինան, հիվանդի շորերը հագին, գլուխը սպիտակ թաշկինակով փաթաթված, ձեռնափայտին հենված դուրս եկավ նկուղից ու գնաց նստեց պատի տակ, մյուս հիվանդների կողքին: Այդ ժամանակ Շուշիկը թեյնիկը ձեռքին մի քանի անգամ իջավ նկուղ ու վերև բարձրացավ: Անցավ սարսափելի մեկ ժամը: Զինվորականներն ու քաղաքացիական հագուստով մարդիկ նստեցին ավտոմեքենաներն ու գնացին: Ես այլևս աղջիկների մոտ չվերադարձա: Վաղարշակին հանդիպելու համար գնացի կայարան:



Ծանր մտքերը ինձ տանջում էին: «Ի՞նչ կատարվեց հիվանդանոցում»,— շարունակ մտածում էի ես: Եվ հանկարծ հեռվից նկատեցի Զարվարդին ու քայլերս դանդաղեցրի: Նա հավասարվեց ինձ:

Հը՛, ինչպե՞ս եղավ. սրտատրոփ հարցրի ես:

Հազիվ փրկվեցինք. սրիկաները հոտն առել են: Դու և Վաղարշակը առայժմ մեզ մոտ չգաք. երևի հսկում են:

— Զարվա՛րդ. ինչպե՞ս եղավ. խնդրում եմ. պատմիր. ասացի ես:

Երբ դու ազդանշան տվեցիր. ես ներս մտա. Անտոնինան անմիջապես դադարեցրեց հաղորդումը. ռադիոապարատը դրեց վառելափայտի արկղի մեջ ու փայտերով ծածկեց. իսկ Շուշիկը հիվանդի շորեր հագցրեց նրան և պառկեցրեց հիվանդների մոտ: Այդ ժամանակ ներս մտան զինվորականները. ամեն ինչ տակնուվրա արեցին. բայց ռադիոապարատը չգտան:

Զարվարդը վերադարձավ: Վաղարշակին հանդիպեցի կայարանում: Երբ ամեն ինչ պատմեցի. նա հրճվանքով ասաց.

Կեցցե՛ն աղջիկները. նրանք փրկել են Անտոնինային:

Այս դեպքից հետո ռադիոապարատը տեղափոխեցինք անտառ: Անտոնինան հայրենիքի հետ մի քանի անգամ կապվեց անտառից: Հաղթանակը օրավուր մոտենում էր: Հեռվից լսվում էր մեր հրանոթների խուլ որոտը: Երկնքում հաճախ էին երևում մեր ինքնաթիռները:

Մայիսի 2-ին սովետական տանկերը կայարանի կողմից մտան Նոյրուպին ու հաղթականորեն անցան կենտրոնական փողոցով: Նրանց հետևեցին մեր մյուս ստորաբաժանումները:

Գերմանացի երեխաները ծաղիկներ էին նետում մեր զորքերի ճանապարհին: Բոլորի հետ իրենց անզուսպ հրճվանքն էին կիսում Շուշիկը. Վաղարշակը. Զարվարդը: Անտոնինան գրկել էր ռադիոապարատը. նրա մանկական դեմքը խնդությունից այնպե՜ս էր պայծառացել. իսկ գարնանային քամին մեղմորեն խաղում էր ոսկեգույն մազերի հետ:





*րեկ դասարանում Տաճատի հերթապահության ժամանակ թաղարների միջից պոկոտել էին ծաղիկները: Տաճատը մտել էր դասարան և տեսել էր Արշավիրին նստարանների միջև՝ ճմրթված ծաղիկները ձեռքին: Եվ ահա այսօր դեռ առավոտյան այդ Տաճատը. որին ընկերները անվանում էին Տաճ. ասում էր.*

*— Քննելու ենք Արշավիրի գործը. ոչ մեկդ չբացակայի. լսո՞ւմ եք:*

*— Տաճ.— ասում էր Սեթը.— Արշավիրը մեր դասարանից է. դու պարտավոր ես նրան պաշտպանել: Այս պատմությունը որոշ չափով վերաբերում է բոլորիս:*

*— Նրան շատ լուրջ մեղադրանք է հարուցված.— ասում էր Տաճատը.— և չեմ կարծում. թե նա թեթև դուրս պրծնի:*

*— Դու հիացած ես. Տաճ.— ասաց Սամվելը:*

*— Իսկ նրանք.— ասում էր Տաճատը.— կարծում են. թե ամեն ինչ կարող են անել և անպատիժ մնալ: Ներում չի լինի:*



*Եվ ահա Արշավիրը՝ խոշորամարմին. մեծ գլխով. առաջ ընկած ծանր ճակատի տակ. իրար մոտիկ. կլորավուն. խոշոր աչքերով և նույնիսկ հիմա. երբ դասարանի բոլոր աշակերտները նրան են նայում. նույնիսկ հիմա՝ մի տեսակ լուռ. համակերպվող և միամիտ հայացքով:*

*Եվ Տաճատն ասում է.*

# Շատախոսը

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

— Եվ հարցրի նրան՝ ո՞ւր ես տանում ծաղիկները: Նա ինձ պատասխանեց, թե՝ այստեղ թափված էին, հավաքել եմ:

— Իսկ դու, որ պնդում ես, տեսե՞լ ես, որ դրանք նա ինքն է պոկել,— հարցնում է Սեթը:

Սեթը նստած է ամենավերջին նստարանին, և մյուս աշակերտների հետևից Արշավիրը նրա դեմքը լավ չի տեսնում:

— Ես հարցնում եմ, դու ինքդ տեսե՞լ ես:

— Արդարամիտ Սեթ, խանգարում ես,— ասաց ավագ ջոկատավարը,— հարցերը՝ վերջում: Իսկ հիմա թողեք նա վերջացնի:



— Ես տեսա,— ասում է Տահմազը,— թե ինչպես Արշավիրը մտավ դասարան...

Ահա այսպես, դասարանցիներին ամեն տեղ կարելի է տեսնել Տահմազի նկարագրով, գունատ դեմքը, միայն դեմքը, որովհետև նրա աչքերը մանր են, և մեկ էլ թեև «Ձնանդուղթող-ներ» կարմիր թեկնայր:

— Ես տեսա,— շարունակում է Տահմազը,— թե նա ինչպես մտավ դասարան, և մրմնջաց՝ «բոլոր աշակերտները բանում են, ինչո՞ւ նա պիտի մտնի դատարկ դասարան, նրան այնտեղ ի՞նչ է հարկավոր»: Մոտեցա և դռան ճեղքից նայեցի...

Եվ Սեթը համոզվում է, այնինչ Տահի աչքերը նույնպես կան, նիհար դեմքի վրա, նեղլիկ ճակատի տակ՝ մանրիկ, իրար մոտ տեղավորված աչքերը, և դրանք նեղլիկ ճակատի տակից ամեն ինչ տեսնում, նկատում են: «Ինչո՞ւ ես թրում համակին», — ասում է Տահը՝ մոտենալով աշակերտներից մեկին: «Ձեռ թրում», — արդարանում է նա: «Թրում ես...» — ամբողջ միջանցքով մեկ բղավում է Տահը: «Ինչո՞ւ ես բարձր ծիծաղում», — պատի մոտից հեռանալով՝ հանդիմանում է նա մի ուրիշին: «Իսկ քո վզկապը ո՞ւր է, պիոներ չե՞ս, ինչ է»: — Եվ նորից սահում է պատերի երկայնքով Տահի դեմքը, գունատ, թվում է, առանց աչքերի:

Զառուշյան Արշավիր,— ասում է ավագ ջոկատավարը,— ծաղիկները դո՞ւ ես պոկել:

Արշավիրը միամիտ հայացքը դարձնում է նրան, շրթունքները սեղմում է, տարուբերում գլուխը:

— Ուրեմն դու չե՞ս պոկել:

Արշավիրը շարունակում է տարուբերել գլուխը:

— Ո՛չ,— վերջապես ասում է նա:

— Ո՛չ,— հուսահատված ասում է ավագ ջոկատավարը:

— Նրա հետ ի՞նչ եք ավելորդ գլուխ ցավեցնում,— ասում է Տահմազը,— չե՞ք տեսնում, թե նա ինչպես անխոստան է ասում:

Եթե Սեթը համոզված լիներ, որ այդ Արշավիրը այդքան համարձակություն ունի և սեր. «Արշավիր, կգնաս դասարան, կպոկոտես ծաղիկները, կբերես», Արշավիրը անկասկած, կգնար, որովհետև Սեթը գիտեր, նա այնքան խելացի չէր, որպեսզի կարողանար հասկանալ, թե որոշ դեպքերում ընկերները կարող են իրեն սխալ բաներ ասել:

Դո՞ւ հավատու՞մ ես, որ նա կարող էր ծաղիկներ պոկել,— չի համբերում Սեթը:

— Իսկ ինչո՞ւ ոչ,— ասում է Տահմազը,— նա վատ է սովորում: Շատ վատ: Ուրեմն ընդունակ է ամեն անկարգության:

Պատահել է, և այն էլ հաճախ, որ Տահմազը հերթապահելիս հանձնարարել է Արշավիրին. «Ծաղիկները կջրես»: Արշավիրը վերցրել է ջրցանը, բակից ջուր է բերել, ջրել է: Եվ հիմա Արշավիրը ճակատի տակ հավաքված խոշոր, կլոր աչքերով զարմացած նայում է:

Առանց ամաչելու դեռ նայում է,— ասում է աշակերտներից մեկը:

— Խանգարում եք, — լսվում է ավագ ջոկատավարի ձայնը:

— Թորոսյան, — ասում է նա Տաճատին, — հասկանալի է, Արշավիրը մտել էր դասարան, բայց դու տեսա՞ր, թե նա ինչպես պոկեց:

— Ես հերթով պատմում եմ, — ասում է Տաճատը: — Ես դռան արանքից նայեցի:

Սեթը չի համբերում.

— Ոչ, դու ինքդ տեսա՞ր, երբ նա պոկում էր:

— Տե՛ղդ նստիր, Աբրահամյան, — սաստում է ավագ ջոկատավարը:

— Ես ասում եմ, — պնդում է Տաճատը, — ես ասում եմ, նա մտավ դասարան, ես նրա հետևից դռան ճեղքից նայեցի և տեսա:

— Բայց դու ինչո՞ւ չարգելեցիր, — ամենաառաջևի նստարանից հարցնում է Արմենը:

— Կարծում էի, թե նա ինքը կհասկանա, բայց նա շարունակում էր:

— Եթե դու տեսնեիր էլ, — ասում է Սեթը, — միևնույն է, կպատմեիր, մինչև նա բոլորը պոկեր:

Տաճատին տարօրինակ էր թվում, որ Սեթը պաշտպանում է այդ Արշավիրին:

— Դու պաշտպանում ես նրան, իսկ նա, հայտնի է, լավ էլ չի սովորում:

— Դա ի՞նչ կապ ունի, — ամենաառաջևի նստարանից ասում է Արմենը: — Դու ինքդ էլ վատ ես սովորում:

— Բայց ես կարգ եմ պաշտպանում, — ասում է Տաճատը, — հասկացա՞ր:

— Սեթ, — ասում է ավագ ջոկատավարը, — լռո՞ւմ ես, նստիր: Իսկ դու, Թորոսյան, նրանց հարցերին մի՛ պատասխանիր, պատմի՛ր ինչ որ տեսել ես:

— Ես տեսա, — շարունակում է Տաճատը, — թե նա ինչպես գողի նման կռացած մոտենում էր ծաղկամաններին և պոկոտում էր:

— Արշավի՛րը, — ասում է ավագ ջոկատավարը:

Արշավիրը:

«Պարզապես ասացվել է, — մտածում էր Սեթը, — որ այստեղ այդ Տաճին հավատում են»: Եթե այդ դեղնած դեմքը տեսներ էլ, որ ոչ թե Արշավիրը, այլ ինքը՝ Սեթը կամ աշակերտներից թեկուզ մի ուրիշը պոկոտում է ծաղիկները, նույնպես չէր արգելի, դռան հետևում կհամբերեր մինչև վերջ, որպեսզի հետո հիմա՝ «Երեկ ջոկատի խորհրդի նիստում Սեթի հարցը քննեցինք...»

— Արշավիր, — ասում է ավագ ջոկատավարը, — եթե դու չես արել, գոնե կասես, թե ով է արել, գոնե դու գիտես:

Այստեղ արդեն պետք էր ասել. «Չգիտեմ», իսկ այդ Արշավիրը ասում է.

— Չեմ ասի:

— Ուրեմն նա ինքն է արել, հասկանալի է, — ասում է աշակերտներից մեկը:

Երեկ մեծ դասամիջոցին Սեթն ու Սամվելը նրան ասացին. «Արշավիր, եթե քեզ մի կարևոր գործ հանձնարարե՞նք»: Վերջապես նրան վստահել էին և հանձնարարություն էին տալիս: Եվ նա ասաց. «Կանեմ»: «Դա ես ինքս էլ կարող եմ անել, — ասում էր Սեթը, — բայց ինձ կարող են կասկածել, իսկ քեզանից նույնիսկ չեն էլ հավատա. այսպիսի ժամանակ դու ի՞նչ ես արել»:

— Ուրեմն դու չե՞ս պոկել, — հարցնում է ավագ ջոկատավարը:

Արշավիրը տարուբերում է գլուխը:

— Եվ չե՞ս ուզում ասել, թե ով է արել:

Արշավիրը լռում էր, նա նույնիսկ գլուխը չէր հակել, նույնիսկ չէր կարմրում: Մտածում էր, ծաղիկներն ախր ինքը չէր պոկոտել, ու երևի պատահած միակ դեպքն էր, երբ նա հաստատ համոզված էր, որ իր ընկերները սխալ էին:

— Նա նույնիսկ ամաչել չգիտի, — ասում է աշակերտներից մեկը:

— Ամաչելու համար նախ պետք է գիտակցել, իսկ նա... — ասում է մի ուրիշը:

Հիմա Սեթը հասկանում էր, այդ տղան բոլորից մեկուսի կարող էր ապրել այնպիսի լավ զգացմունքներ, որ նրանցից ամեն մեկին անհասկանալի էին:



— Վերջացրե՛ք, — ասում է ավագ ջոկատավարը:

— Եվ չե՞ս ուզում ասել, թե ով է արել, — ասում է նա Արշավիրին:

Ինչ-որ մի պահ թվաց, թե Արշավիրը մտածեց: Երեկ մեծ դասամիջոցին Արշավիրը մտավ դասարան, պոկոտված ծաղիկները, ինչպես նրան հանձնարարել էին Սեթն ու Սամվելը, ամենաառաջևի նստարանի տակից վերցրեց և հենց այդ պահին դռների միջև տեսավ Տաճատի նիհար, գունաթափ դեմքը:

— Բռնեցի, — ասաց Տաճատը:

Արշավիրը տեսավ նրա մանրիկ աչքերի չարագուշակ հրճվանքը և հավատաց, որ այդ պահին

իրեն բռնեցին ինչ-որ խոշոր ծանր ճանկերի մեջ:

Վերջապես բռնեցի... և Արշավիրին թվաց, թե իրեն վաղուց պիտի բռնեին...

Հիմա Արշավիրը լռում էր:

Ես միշտ էլ կարծում էի, — ասում է Տաճը, — որ նրա տակ ինչ-որ բան կա թաքնված. նա նույնիսկ սուսիկ-փուսիկ է և հեզ. կարևոր փաստը՝ նա վատ է սովորում:

Առջևի նստարանին այդ կողմում նստում էր Արմենը: Նա լավ տղա է, սրտակից ընկեր, և Սեթը չէր ուզի, որ պոկոտված ծաղիկները նրա նստարանի մեջ գտնեին: Եվ երեկ մեծ դասամիջոցին նա ու Սամվելը Արշավիրին ասացին. «Կմտնես դասարան, Արմենի նստարանի դարակում ծաղիկներ կան դրված, կվերցնես կբերես»:



Լռո՞ւմ ես, Արշավիր, — ասում է ավագ ջոկատավարը, — ցույց թողնենք՝ դու մի քիչ մտածե՛ս: Այո՛, — գոչեց նա բոլորին, թողնե՛նք նա մի քիչ էլ մտածի:

Ես գիտեմ եմ, — ասում է Տաճատը, — անտեղի է նրա հետ զրույց վարելը, պետք է պատժել և որքան հնարավոր է խիստ: Այդ ծաղիկները մենք մեծ զվարթությամբ էինք աճեցրել...

Արշավիրը անկարող է նույնիսկ իր խոշոր, կլոր աչքերը ինչպես հարկն է գործել, աչքերը, թվում է, շլվում են, և նա խոշոր, շիլ աչքերով շարքերի վերջում ընկերների դեմքին փնտրում է Սեթին, և նրա հայացքում կա պաղատանք հիշեցնող ինչ-որ բան, որը, սակայն, բոլորին տարօրինակորեն թվում է, թե կապ չունի այն ամենի հետ, ինչ հիմա նրան ասում են:

— Խո՞սի, լսո՞ւմ Արշավիրը, — ասում է աշակերտներից մեկը:

Եվ բոլորը ծիծաղում են:

Այդպես չի, — Սեթը բարձրացրեց ձեռքը, սակայն ամենավերջին նստարանից նրան խոսել չէին թողնի, կարգը այդպես չէր, նա պետք է սպասեր մինչև այդ Տաճատը ասեր բոլոր խոսքերը, և նա անցավ նստարանների արանքով: Ինչ-որ մեկը բաշեց թևը, համառաբար, ուզեց արգելել: Սեթը անցավ նստարանների արանքով, ավագ ջոկատավարը անշարժ էր, և Սեթը նրա հայացքից հասկացավ, որ նա իրեն կլսեր, այստեղ նույնիսկ պետք էլ չէր այնպես խոսել, որ բոլորին լսելի լիներ:

Այդպես չի, — հանգիստ ասաց նա, — ծաղիկները մենք ենք պոկոտել, ես ու Սամվելը, նա ինքն էլ կար՝ միասին էինք:

Դո՞ւք, — ասաց ավագ ջոկատավարը:

Սեթը գլխի շարժումով հաստատեց և նույն անկեղծությամբ համառաց, որ ավագ ջոկատավարը իրենից սպասում էր:

Ինչո՞ւ, — հարցրեց նա:

Անցյալ օրը այդ Տաճատը անդադրույթի աշխույժ էր: «Տաճ, ասել էր Սամվելը, — ուրախ ես»: «Նա, համառաբար Աշոտից ձեռք է գցել իր ուզած դրոշմանիշերը», — եզրակացրել էր Սեթը: «Ոչ, ասել էր Տաճատը, — դրոշմանիշերը չավեց: Բայց, այ, «Ձնանդուրդողների» խմբագրում նրա վարքը քննեցին, թերթում նրան կծաղրանկարեն, և նա հենց օր դասարանում համբերաբար կլինի»: «Դու հիացած ես, Տա՛ճ», — ասել էր Սամվելը: «Ի՛նչ», — ասել էր այդ Տաճատը: Առաջ դասարանում ավելի խիստ էին պատժել, հիմա, ինչ է, զրկում են մի բանի օր վզկապ կրելու իրավունքից և ուրիշ ոչինչ»: Եվ ինչու ինքն ու Սամվելը որոշեցին այդ Տաճին որևէ կերպ պատժել, այդ մասին նրանք նույնիսկ իրար հետ չխոսեցին, բայց զգում, որ դրա համար ամենից լավ կլինի Տաճատի հերթապահության ժամանակ թաղամասերից ծաղիկները պոկոտել: Բայց դասարանից այդ ծաղիկները դուրս բերել չկարողացան. նրանք դռան հետևում ոտնաձայներ լսեցին և ծաղիկները շտապ խցկեցին ամենավերջի նստարանի դարակը, իսկ այդ նստարանին նստում էր Արմենը... և ահա, նրանք երեկ, մեծ դասամիջոցին, այդ Արշավիրին հանձնարարեցին...

Եվ թե ինչ պիտի պատմեր Սեթը ավագ ջոկատավարին, սակայն դա շատ երկար կլիներ:

Այդ օրը հերթապահում էր Տաճատը, — ասաց նա:

Դու ինչպես հասկացվեց, կամ, հնարավոր է, ավագ ջոկատավարը բացի դրանից մի ուրիշ բան նույնպես գիտեր, Սեթը չկարողացավ որոշել:

Լավ, բավական է, — ասաց ավագ ջոկատավարը: Սեթ, նստիր տեղդ, — և թեև այս բոլորն արդեն ավելորդ էր և այլևս հարկ չկար, որ աշակերտները նստած մնային, ավագ ջոկատավարն ասաց. — Դու, Զատոյան Արշավիր, նույնպես կարող ես նստել:

# ԳԱՐՆԱՆ ՁԱՅՆԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Ի՞նչ աղմուկ է լսվում նորից՝
Կա՞նխարդելով դաշտ ու անտառ,
Ո՞վ է ձայնում հեռուներից
Այդպես անվերջ ու անդադար։
Ոտնաձա՞յնն է ինչ-որ մեկի,
Թե՞ գնացքի աղմուկ է խենթ,
Արձագա՞նքն է անքուն երգի,
Որ զգում է գիշեր-ցերեկ...
Քամինե՞րն են փչում նորից,
Թե՞ սրինգ է, որ չի լռում,
Հեղեղնե՞րն են իջնում սարից,
Թե՞ ամպրոպ է պայթել հեռվում։

Ի՞նչ շշուկ է լսվում անվերջ,
Կաթիլնե՞րն են ընկնում հողին,
Թե՞ սարյակի թևն է շփվել
Առավոտվա լույսի շողին։
Փայտփորիկի կտու՞ցն է դա,
Որ կեղևն է թակում ծառի,
Թե՞ թևերի շարժումն է ժիր
Վերադարձած իմ ծիծառի...
Այդ գարունն է ուրախ կանչով
Ձեզ ողջունում ամեն կողմից,
Հազար ու մի ելևէջով
Երգում է նա միանգամից։



ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՍՏՎԵՐՆԵՐ

ԳԼՈՒԽ ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ

## ՎԵՐՋԻ՛Ն ԱՐԿԱԾԸ

*Ամիսներն անցնում էին իրար հետևից։ Թվում էր ամեն ինչ կարծես թե խաղաղվում էր։ Վարյուշին մարդիկ մոռանում էին, թաղն իր հոգսերն ուներ։ Մի տեղ գարունն առաջին ծնծաղիկն էր բուսցնում, մի տեղ անձրևներից փլչում էր խարխուլ մի տուն, մի տեղ լրագրում կարդում էին, որ Անգլիական այգին այսուհետև կոչվելու է Կոմունարների այգի՝ Բաքվում զոհված քսանվեցի հիշատակին։ Կարդում էին, որ հացն էժանանալու է, որ մշակվում է մի մեծ նախագիծ մեր քաղաքը վերակառուցելու մասին։ Վարյուշին մոռանում էին մեծահասակները, միայն ստեպ-ստեպ, երբ մեզնից մեկը Համբարձումի արհեստանոցից կոմով էր գնում, մարդիկ նայում էին, գլուխներն օրորում.*

*Բա սա գո՞րծ է, հե՜յ գիդի, վարպետ Վարյուշ...*

Սկիզբը՝ 1965 թ. №№ 8—12, 1966 թ. №№ 1—4։

*Բայց մենք երբեք Վարյուշին չէինք մոռանում։ Ռուբենը երկրորդ զրույցը չէր լսել, չգիտեր, որ ինքը Վարյուշի հարազատ զավակը չէ։ Նրա համար Վարյուշը հայրիկ էր ու, որքան էլ նրա մասին տարօրինակ բաներ իմանար, Ռուբենը սիրում էր նրան։ Նա այլևս չէր երգում «Ջի, ծի, ծի» երգը, չէր երգում, որովհետև դրա մեջ կորպուսի հրամանատար Դումենկոյի անունը կար։ Ռուբենը չէր խոսում Վարյուշի մասին, դրա փոխարեն պատմում էր, թե ինչպես է փողոցում իրեն բռնել ճշերի կոշկակարը, ինչպես է փակել բերանն ու քարշ տվել ձորի կածանով։*

*Ամիսներն անցնում էին։ Կոմունարների այգու ծառերի վրա փոքրիկ կանաչ տերևներ երևացին, հետո մի առավոտ արևն այնպես տաքացրեց, որ մենք գդակներս ու վերարկուներս հանեցինք։*

*Աննկատ եկավ ամառը, դպրոցական արձակուրդներն սկսվեցին։*

*... Մենք երբեմն գնում էինք Զանգվի ձորում լողանալու։ Կարոն մտախոհ էր։ Երբ հասանք ծակ քարին, ասաց.*

*— Մտնենք։*

Չարկամոր չի.— փախեցավ Թուրենը:

— Մանենք, բան եմ ասելու:

Ես ու Թուրենը զգուշությամբ գնացինք նրա հետևից:

Կիսախավար քարանձավում զով էր, բայց, իհարկե, դրանից չէր, որ իմ դալուկ բարեկամը դողում էր ամբողջ մարմնով: Կարոն նստեց: Մենք տեղավորվեցինք նրա կողքին:

— Լսի՛ր, տղերք,— ասաց նա,— ես երկար եմ մտածել, ես գիտեմ, թե որտեղ է այն բանը:

— Ի՞նչ բան:

— Ինչ որ փնտրում էին էշերի կոշկակարն ու նրա ընկերները:

Որտեղի՞ց գիտես:

— Այն ժամանակ, երբ իմ դալուկ բարեկամը պատմում էր, որ այգում Վարյուս քեռին դագաղ է թաղել, ես մտածեցի, թե այդ բոլորը իմ դալուկ բարեկամը երազում է տեսել:

— Ուրեմն... — մեջ ընկա ես:

— Սպասիր,— ասաց Կարոն,— ոչ մի դագաղ էլ չկա, դա արկղ է, հասկանո՞ւմ ես, արկղ, որի մեջ հենց այն բանն է: Վարյուս քեռին թաղել է, որ այդ ավազակների ձեռքը չընկնի:

Ես վեր թռա տեղիցս:

— Նստիր,— ասաց Կարոն,— հիմա մենք այդ արկղը պիտի հանենք:

... Գիշերը թաղը հանգիստ քնած էր, քնած էին նաև Ցոլակը, Մարիամիկը, երեխան: Ամբողջ թաղում արթուն էին միայն երեք մարդ՝ «Անտեսանելի ասպետներ» խմբի անդամները: Թուրենը չէր կարող փորել, նա այնուամենայնիվ, վախենում էր, միայն տեղը ցույց տվեց ու հեռու կանգնած հսկում էր, որ եթե մեկը արթնանա, իսկույն իմաց տա: Իսկ ես ու Կարոն քլունգով ու բահով զգուշությամբ փորում էինք մեծ թթենու տակ: Սիրտս պայթում էր: Ինձ խառն զգացումներ էին պաշարել: Իսկ եթե հանկարծ: Չէ, չի կարող լինել: Իսկ ի՞նչ է այդ արկղի մեջ: Համենայն դեպս մի այնպիսի բան, որ հիսուն հազար ոսկի արժի...

Բահը կպավ արկղին ու խուլ թնդաց: Ես դողացի: Կարոն սկսեց զգուշությամբ հանել փուխր հողը: Խավարում նշմարվեցին երկարուկ արկղի կողերը: Արկղը մետաղից էր, բայց երբ կպանք բարձրացնելու, զարմանալի թեթև դուրս եկավ: Մենք երկուսով հեշտությամբ հանեցինք: Կողպված չէր: Մեջը մի ուրիշ փայտե արկղ կար, իսկ դրա մեջ՝ ջութակ:

Հիասթափված նստեցինք հողաթմբին:

— Էս ի՞նչ է,— շշնջացի ես:

Թուրենն արդեն մոտ էր եկել: Կարոն ինչ-որ թուղթ էր հանում փայտե արկղից:

— Նամակ,— ասաց նա:

Արկղը, ջութակն ու նամակն առած, մենք մըտանք Թուրոյենց գետնափոր ցախանոցը: Թուրենը ներսից դուռը փակեց, ես լուցկի վառեցի ու Կարոն կարդաց թուղթը.

«Ընկերներ, երբ ես այլևս չեմ լինի, մեկը, երևի կփորի պարտեզն ու կհանի այս արկղը: Համենայն դեպս, մեռնելուց առաջ ես դրա տեղը կասեմ որդուս՝ Ցոլակին»:

Ես իրար հետևից վառում էի լուցկիները, ու դրանց լույսով Կարոն կարդում էր.

«Ժամանակին ես ինքս էլ ջութակներ եմ պատրաստել ու վատ չեմ պատրաստել, բայց սա ուրիշ է: Սա պատրաստվել է դարեր առաջ, իտալացի մեծ վարպետ Անտոնիո Ստրադիվարիուսի ձեռքով: Այս ջութակը մի անգին գանձ է, որ իմ ձեռքն է ընկել շատ տարիներ առաջ, պատահաբար: Չար մարդիկ այս գանձն ուզում էին խլել ինձանից, իսկ ես ուզում եմ, որ ջութակը մնա իմ ազատագրված հայրենիքում:

Իմ անունը Վարյուս չէ: Այդպես կոչում էին ինձ տարիներ առաջ, իմ թափառումների օրերին, ձեռ առնելով, պարզապես կրճատել էին Ստրադիվարիուս անունը: Իմ իսկական անունը Հակոբ է, Հակոբ Եսայան: Ես եղել եմ քաջ հրամանատար Բորիս Դումենկոյի զինվորը: Ծառայում էի նրա շտաբում, մտերիմ էի նրա հետ, սիրում էի նրան: Եվ մի՞թե կարելի էր չսիրել այդ ազնիվ ու քաջ մարդուն: Նա առյուծի նման էր կռվում մեր խորհրդային երկրի համար: Բայց նրան նախանձում էին, նրա դեմ դավեր էին լարում հեղափոխության իսկական դավաճանները: Նա դրանց չէր թողնում նստել թիկունքում, թալանել Դոնի խաղաղ բնակիչներին: Կային մի քանի հոգի, դրանց մեջ մի մութ մարդ, ինչ-որ Պեսկարյով: Դրանք զրպարտեցին մեր քաջ հրամանատարին, իբր նա ուզում է ապստամբել ու դառնալ մի նոր Մախնո: Զրպարտեցին ու տարան գնդակահարության 1920 թվականի մայիսին... Բորիս Մոկեևիչի հետ իզուր կորան նաև նրա շտաբի պետ Աբրամովը, հետախուզության պետ Կոլպակովը և ուրիշներ... Ես բողոքեցի, ուրիշներն էլ բողոքեցին: Մեզ ձերբակալեցին ու [illegible] տարան: Բայց երեկոյան մեր զորամասի վրա հարձակվեցին Դենիկինի ջարդված բանակի թափթփուկները: Ես կռվում վիրավորվեցի, ընկա զինվորական հիվանդանոց: Այնտեղ փոխեցի անունս... Ահա բոլորը: Ես դավաճան չեմ: Դավաճան չէր նաև իմ քաջ հրամանատարը՝ Բորիս Դումենկոն»:

Լուսադեմին մենք երեքով նորից գնացինք միլիցիայի բաժանմունք: Հերթապահ Գարսևանի համար տարօրինակ էր մեր այցելությունը և



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

մանավանդ թիթեղե արկղը, որ մենք բարշ էինք տվել մեզ հետ։

Նամակը նա խնամքով ծալել, դրել էր գրպանը։ Չգիտեմ ինչու մենք որոշեցինք, որ նամակն առայժմ պետք չէր հանձնել։

— Էս ի՞նչ է, տո,— զարմացավ Գարսևանը։

— Ջութակ։

— Է, հետո՞, ինչի՞ եք բերել։

— Տեր պետի մոտ։

— Էլի՞ պետի. էս ինչ մազալու երեխեք եք։

— Պետի մոտ, կրկնեց Կարոն։

Պետը հեռու չէր ապրում։ Գարսևանը մարդ ուղարկեց նրա հետևից։ Նա եկավ քնահարամ, բայց մեզ տեսնելով, ժպտաց.

— Հը՞, տղե՛րք, էլի ի՞նչ օյիններ եք։

Մի ժամ հետո կառքով արդեն եկել էր ծեր ջութակահարը։ Պետը, Գարսևանն ու մենք սակվել էինք, իսկ ծերունին թավ, ճերմակ բեղերը դողացնելով ասում էր.

— Ստրադիվարյուս է, իսկական Ստրադիվարյուս, սա գանձ է, ընկեր պետ, այս ջութակը...

ՎԵՐՋԱԲԱՆ

Նամակը մնաց ինձ մոտ։ Տարիները գլորվեցին, «անտեսանելի ստվերները» մեծացան, դարձան

*պատկոմներ (ավելի ճիշտ, պիոներներ, բանը որ շուտով սկսեցին պատկոմներին պիոներներ ասել), հետո մտան լենինյան կոմերիտմիության շարքերը: Դպրոցն ավարտեցին, ընդունվեցին բարձրագույն ուսումնական հաստատություններ: Գաջ բազուկը բժիշկ դարձավ, Իմ դալուկ բարեկամը՝ գյուղատնտես, իսկ Օգնող ձեռքը, այսինքն ես՝ գրող: Բայց նրանք պահեցին գաղտնիքը. Գաջ բազուկն ու Օգնող ձեռքը՝ երկու գաղտնիք, այն, որ Իմ դալուկ բարեկամը՝ գյուղատնտես Ռուբեն Աստվածատրյանը, Վարյուսի, այսինքն՝ Հակոբ Եսայանի հարազատ որդին չէ, և մի ուրիշ գաղտնիք, որ գիտեր նաև Իմ դալուկ բարեկամը, այն, որ Վարյուսն իսկի էլ Վարյուս չէր, թեև նրա գերեզմանաքարի վրա հիմա էլ գրված է. «Վարյուս Աստվածատրյան»:*

*Տարիները գլորվեցին: Կյանքը շատ փոխվեց: Երևանը դարձավ ահա այսպիսի հրաշալի քաղաք Բայց մեր սրտում մնաց մի դառնություն: Գրքերում գրել էին, թե դավաճան է եղել Դոնի հեծյալ կորպուսի հրամանատար Բորիս Մոկեևիչ Դումենկոն, իսկ Հակոբ Եսայանը բացարձակ պաշտպանել է նրան ու նույնպես ձերբակալվել, որպես դավաճան... Հակոբ Եսայանը, մեր Վարյուսը...*

*... Ես մտա խմբագրատուն, ձեռքիս «Նեդելյա» շաբաթաթերթի համարը:*

*Ամսագրի խմբագիրը, որ իմ ընկերն էր, զարմացավ.*

*— Ի՞նչ է պատահել, ինչի՞ ես հուզված:*

*Կարդա, ես նրան մեկնեցի «Նեդելյայի» համարը: Այնտեղ մի հոդված կար, որ ես արդեն կարդացել էի: Հոդվածը կոչվում էր՝ «Կորպուսի հրամանատարը շարք է վերադառնում»: Այդ հոդվածը Բորիս Դումենկոյի մասին էր, քաջ հրամանատարի, որ զոհ էր գնացել զարշելի զրպարտիչներին:*

*Ընկերս կարդաց հոդվածը:*

*— Այո,— ասաց նա,— զրպարտել են մարդուն: Բայց սա ինչու՞ է այդքան հուզել քեզ:*

*— Ախր դու չգիտես, ախր...*

*Ես ուզում էի պատմել նրան ամբողջը, բայց հանկարծ մտածեցի, թե գուցե այս պատմությունն ուրիշներին էլ հետաքրքրի:*

*— Ամսագրիդ համար վիպակ ուզու՞մ ես,— հարցրի ընկերոջս:*

*—Էն էլ ոնց եմ ուզում. ունե՞ս, բեր տպագրենք:*

*— Չունեմ, այսինքն ունեմ, մնում է գրելը...*

*Ահա և գրեցի այս վիպակը:*

# ԿԱՆԳԱՌԸ

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Երբ տղաները հասան պողոտա, Համիկը բաժանվեց նրանցից և գլխիկոր գնաց դեպի կանգառը:

Մտածելու այնքան բան կար ո՛ր... Լավ է, որ ճանապարհը երկար էր և ժամանակ ուներ: Նա պետք է անցներ տասնհինգ կանգառ:

Մեկ տարի առաջ նրանք փոխել էին բնակարանը, բայց դպրոցը փոխել Համիկը չուզեց:

Այդտեղ էին նրա բոլոր ընկերները... Եվ գնալ-գալու համար ամեն օր նա տրամվայով երեսուն կանգառ էր անցնում: Բայց գնահատողն ո՞վ էր:

— Վաղը եթե հայրիկդ կամ մայրիկդ դպրոց չգան, դասարան չես մտնի, — նախազգուշացրել էր այս անգամ ուսմասվարը:

«Չէ, դժբախտ տղա եմ». — տրամվայ բարձրանալիս վերջնականապես եզրակացրեց նա:

Թվաբանությունից այնքան էր վախենում որ... իզուր էլ վախենում էր ...ընդմիջմանը, երբ դասարանում ոչ ոք չկար, իսկ սեղանի վրա, չգիտես ինչու, թողել էին դասամատյանը, նա արագ բաց էր արել այն և իր անվան դիմաց մի «չորս» էր նշանակել... ընդամենը «չորս»: Չնայած կարող էր և «հինգ» նշանակել: Ձեռքը բռնողն ո՞վ էր: Գոնե դա հաշվի առնեին:

Թվաբանության ժամին, ընկեր Սարգսյանը նրան կանչել էր գրատախտակի մոտ:

— Ապրես, Համազասպ, «հինգ», —բարձրաձայն հայտարարել էր դասատուն: Հետո, թվանշանը նշանակելիս, նկատել էր «չորս» և... էլ ի՜նչ և: «Չորսը» ջնջեցին, իսկ «հինգը» չնշանակեցին:

Երրո՛րդ օրն է, որ նա ասում էր՝ հայրիկըն ու մայրիկը զբաղված են և չեն կարող դպրոց գալ, բայց այդ օրն արդեն նախազգուշացրել էր ուսմասվարը: Ի՞նչ անի: Դպրոց չգնա՞: Լավ, քանի՞ օր կարող է փողոցներում թրև գալ: Վերջը հո՞ կիմացվի:

«Չէ, մի բան պետք է մտածել»:

Ուղևորներից մեկը, նա, որ զբաղեցրել էր դռանը կից անկյունը, իջավ, և Համիկը

գրավեց նրա տեղը: Տեղը այնպես հարմար էր, որ նրա միտքը ինքն իրեն սկսեց աշխատել:

Ահա նա դասարան է մտնում:

— Հայրիկն այսօր Մոսկվա է թռչում, մայրիկը գնալու է ճանապարհ դնելու:

— Լա՛վ, — հեշտությամբ համոզվում է ուսմասվարը: — Թող վաղը գա:

Համիկը գոհ է: Բայց ուսմասվարը նայում է նրա աչքերի մեջ:

— Ուրեմն՝ մայրիկդ վաղը կգա:

— Այո, իհա՛րկե... անպայման... վաղը նա ազատ է. ինչո՞ւ չպիտի գա: Կգա:

Տրամվայը կանգ է առնում: Ընդամենը երկու կանգառ են անցել: Մտածելու դեռ շատ ժամանակ կա: Տասներեք կանգառ: Մեկ թե երկու րոպեից տրամվայը շարժվում է, բայց անցել է արդեն մեկ օր:

— Համազա՛սպ, մայրիկդ այսօր էլ չեկավ:

— Չգիտեմ, ընկեր Հովակիմյան... ասաց, որ կգա: Ինչո՞ւ չեկավ... ինքս էլ չգիտեմ... մի բան պատահած չլինի՞:

Ուսմասվարն էլ է մտահոգվում:

Տրամվայն անցնում է մեկ կանգառ և մեկ օր:

— Համազա՛սպ:

— Լսում եմ, ընկեր Հովակիմյան:

— Ի՞նչ է պատահել:

Տրամվայը ուժեղ է ցնցվում: Համիկը պայծառանում է:

— Ընկեր Հովակիմյան... մայրիկը հեռագիր է ստացել... Կարծես հայրիկի ինքնաթիռը...

— Ինքնաթիռը... ի՞նչ:

— Դե, կարծես ցած է ընկել:

Ուսմասվարի լայն բացված աչքերը նայում են նրան։ Երեխաներն անմիջապես շրջապատում են Համիկին-և նրա աչքի առաջ ակամա պատկերանում է ոլոր ու մոլոր ցած գահավիժող մի ինքնաթիռ: Ու նույնիսկ լըսում է չարագուշակ սուլոցը:

Ցածր, ձյունածածկ լեռներ են, տեղ-տեղ դուրս ցցված, սրածայր ժայռերով:

Ահա ուր որ է ինքնաթիռը կբախվի լեռներին և ջարդուփշուր կլինի. Համիկը հավաքում է ողջ ուժերը.. Ինքնաթիռն անսպասելի ուղղում է մեջքը, սլանում է դեպի վեր և կորչում ամպերի մեջ:

Համիկը հանգստացած շունչ է առնում:

Նորից մի կանգառ և մեկ օր:



Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Հիմա արդեն ուսմասվարին և իրենց դասարանցիներին են միացել Ա և Գ դասարանցիներն էլ և այնպես են նայում նրան, որ...

— Դե՛, Համազասպ...

Ինքնաթիռը նետվում է այս ու այն կողմ, փորձում է դուրս գալ ամպերի միջից... ինչ-որ տեղ փայլատակում է կայծակը... եթե այն հարվածի ինքնաթիռին, ամեն ինչ վերջացած է: Ուղևորները տագնապի մեջ են: Կապել են գոտիները: Նրանց մեջ է և հայրիկը... Ի՞նչ անել, ինչպե՞ս փրկել նրանց:

— Համազա՛սպ...

Այս ի՜նչ մարդիկ են, ինչո՞ւ են ուզում, որ ինքնաթիռը անպայման ջարդուփշուր լինի...

— Համազա՞սպ:

Էլ ի՜նչ Համազասպ... Ի՞նչ կարող է անել Համազասպը: Նա, ճարահատյալ, գլուխը դնում է նստարանին ու սկսում է լաց լինել:

Իսկ ինքնաթիռը թակարդ ընկածի պես այս ու այն կողմ է նետվում, փնտրում է երկնքի մի կապույտ պատառիկ, մի պատուհան, դուրս գալու համար աղետից:

Բացի հայրիկից և օդաչուներից, մյուս բոլոր ուղևորները արդեն կորցրել են փրկության հույսը:

Կանգառները հաջորդում են մեկը մյուսին: Մնացել է վերջին կանգառը, որից հետո նա կիջնի տրամվայից ճիշտ ու ճիշտ իրենց տան դռան առաջ... Իսկ ինքնաթիռը դեռ շուռումուռ է գալիս ամպերի մեջ և վերջին ճիգերն է բանեցնում:

Տրամվայն արգելակում է, անիվները չարագուշակ ձայն են հանում, իսկ ինքնաթիռը գահավիժում է դեպի լեռները...

Համիկն արագ իջնում է տրամվայից և հուսահատ քայլում է դեպի տուն: Մայրիկն արդեն ճաշի սեղան է պատրաստում: Հարևան սենյակից ներս է գալիս և հայրիկը... ողջ ու առողջ, ժպտադեմ:

Համիկը շունչ է առնում, նայում է հայրիկին.

— Հայրի՛կ...ես,—սկսում է նա:

Հետո նա պարզ ու հստակ տեսնում է, թե ինչպես ինքնաթիռը նորից շտկվում, գտնում է կապույտ պատուհանը և սուրալով դուրս է գալիս դեպի ջինջ, ապահով երկինք:



# ՀՆԴԿԱՀԱՎԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

ՔՐԻՍՏԻԱՆ ՊԻՆՈ

Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ

Կար-չկար մի փոքրիկ տղա կար, անունը՝ Անրի։ Անրին շատ փոքր հասակից զրկվել էր ծնողներից, մնալով իր հորեղբոր խնամքին։

Անրիի հորեղբայրը՝ հարուստ ագարակատեր Ժերոմը չափազանց ագահ ու ժլատ մարդ էր։ Նրա կինը՝ մորաքույր Մարթինը, նույնպես ագահ ու դաժան էր։ Նրանք երկուսն էլ չէին սիրում Անրիին և միշտ հալածում էին նրան, ծեծում ու քաղցած պահում։ Նրանց տանն ապրելուց ի վեր խեղճ երեխան կուշտ փորով հաց չէր կերել։ Նա երազի նման էր հիշում իր մայրիկի կենդանության ժամանակ անցկացրած երջանիկ ու անհոգ օրերը և նույնիսկ մոռացել էր իրենց խոհարարուհու ձեռքով պատրաստված համեղ կերակուրների ու կարկանդակների համը, որոնցից նա միշտ կատվին էլ բաժին էր հանում։

Ժերոմն ու նրա կինը բոլորովին հոգատար չէին. նրանք փոքրիկի երեսին անգամ չէին նայում, որովհետև նա ծանր բեռ էր իրենց ուսին։ Նրանք մի բան էին հասկանում միայն, որ մարդիկ ստեղծվել են միմիայն աշխատելու համար և եթե մարդը չի աշխատում, ապա նա իրավունք չունի հաց ուտելու։ Իսկ Անրին շատ փոքր էր դեռ և չէր կարողանում աշխատել, այդ պատճառով էլ նա միշտ քաղցած էր մնում։

— Երբ որ աշխատես, կրկնակի բաժին կստանաս,— ասում էր փոքրիկին մորաքույր Մարթինը, երբ խեղճը լաց էր լինում քաղցածությունից,— իսկ այժմ դու դեռ ոչ մի բանի պետք չես, միայն ավելորդ բեռ ես մեր վզին և դեռ շնորհակալ եղիր, որ մենք քեզ պահում ենք։

Եվ քաղցած երեխայի աչքերի առաջ նա կտրում էր ապուխտի լայն շերտեր, եփում էր շաքարով պատած խնձորներ և այլ համեղ բաներ...

Նոր տարվա նախօրեին էր։ Հորեղբայր Ժերոմը սովորականից վաղ էր վերադարձել տուն և այժմ, վառարանի մոտ նստած, հանգստանում էր ու ծխամորճ ծխում։

Մորաքույր Մարթինն ու աղախինը զբաղված էին ճաշի պատրաստությամբ, իսկ Անրին, խոհանոցի մի անկյունում կուչ եկած, լայն բացված աչքերով հետևում էր նրանց ձեռքի շարժումներին։

Վերջապես չկարողանալով այլևս համբերել, նա սիրտ առավ և հարցրեց երկչոտ ձայնով.

— Իսկ ես կարկանդակ պիտի ուտե՞մ։

Այս խոսքով մորաքույր Մարթինը այնպես բղավեց խեղճ երեխայի վրա, որ նա այլևս ոչինչ չկարողացավ ասել և ավելի կուչ եկավ իր անկյունում։

— Ի՞նչ... կարկանդա՞կ,— հարձակվեց նրա վրա մորաքույր Մարթինը,— ա՛յդ էր պակաս։ Գուցե դու դեռ ուրիշ բանե՞ր էլ կուզես, սիրու՜ցս, շաքարակալած խնձոր... Ի՞նչ է, այդ դու՞ ես վճարում այս բոլոր մթերքների համար։ Հա՛, ի միջի այլոց, չմոռանամ ասել, որ երբ մենք սեղան նստենք, դու վաղուց արդեն քնած պիտի լինես։

Խեղճ Անրին ոչինչ չպատասխանեց և արցունքները հոսեցին նրա այտերով։

— Առ, ծույլիկ,— ասաց նրան աղախինը, դրամ տալով Անրիին,— քանի որ պարապ ես, վերցրու այս դրամը և վազիր խանութ, գնիր դարչին ու շագանակ՝ պուդինգի ու հնդկահավի համար։ Տե՛ս, չուշանա՛ս։

Անրին վեր կացավ տեղից, ուսերին գցեց իր հնամաշ ունոցը և դուրս եկավ տնից։ Ժերոմի ագարակը բավականին հեռու էր խանութից։ Անրիի համար դժվար էր քայլել ձյան միջով, և նա մտածեց, որ ավելի լավ կլինի անտառով գնալ։ Որոշ ժամանակ անց, նա հասավ նպարեղենի խանութը։

— Այս ինչու՞ ես այդքան ուշ եկել, փոքրիկ,— հարցրեց նրան նպարավաճառը, շոյելով տղայի գլուխը,— ի՞նչ է քեզ հարկավոր։

— Պարոն,— անհամարձակ սկսեց Անրին,— ես... մեզ հարկավոր է դարչին և շագանակ, և ահա ես եկել եմ դրանք գնելու, միայն թե խնդրում եմ, պարոն, լավը տվեք, որպեսզի մորաքույր Մարթինը չբարկանա ինձ վրա։

Հը՛մ, Մարթինը լավ գիտե իր գործը։ Նա շատ լավ գիտե, որ քեզ երբեք վատ ապրանք չեմ տա, այդ պատճառով էլ քեզ է ուղարկում խանութ...

Այդ միջոցին խանութ մտավ մի հաղթանդամ, բարի աչքերով, ալիքաձև մորուս ծերունի և մոտենալով Անրիին, ասաց.

— Այս ի՞նչ սիրունիկ մանչուկ է, իսկ ինչու նա այդչափ նիհար ու դժգույն է:

— Որովհետև, պարոն, ես դեռ չեմ աշխատում,



իսկ՝ ով չի աշխատում, նրան հաց չեն տալիս, — լրջությամբ բացատրեց Անրին ծերունուն, — իսկ ես այնպե՞ս քաղցած եմ...

— Քաղցա՞ծ ես: Ի՞նչ է, դու դեռ մինչև հիմա բան չե՞ս կերել:

— Օ՜, պարոն, այսօր ինձ միայն մի կտոր չոր հաց են տվել, այն էլ այնքան բարակ, որ...

Նպարավաճառը նշան արեց ծերունուն և մի կողմ տանելով նրան, պատմեց այն ամենը, ինչ գիտեր փոքրիկ տղայի մասին: Այնուհետև բարձր ձայնով ավելացրեց.

— Հարկավոր է մի լավ դաս տալ դրանց, բայց Ժերոմն ու նրա կինը հարուստ մարդիկ են և դժբախտաբար, ոչ որ չի համարձակվում նրանց քեֆին դիպչել:

— Այո, շատ ցավալի է, — մրմնջաց ծերունին խորամանկորեն ժպտալով, — ցավում եմ, որ ոչինչ չեմ կարող անել այս փոքրիկի համար: Ես օտարական եմ ու ճամփորդ, այլապես չէի թողնի նրան այսպես, կվերցնեի ինձ մոտ ու կպահեի:

Դու մի ասի, ալիքաձևամորուս ծերունին բարի կախարդ էր և ուզում էր անպատճառ օգնել փոքրիկ Անրիին, բայց չէր ուզում այդ մասին նպարավաճառն իմանա, ուստի դառնալով տղային ասաց.

— Ես քեզ կուղեկցեմ մինչև ձեր տունը, տղա՛ս:

Անրին շատ ուրախացավ: Նրան շատ էր դուր եկել բարի ծերունին, և բացի այդ, ձմռան մութ գիշերին ընկերով ճանապարհն անցնելը լավ էր:

Անրին վստահորեն բռնեց ծերունու ձեռքից, կարծես վաղուց ճանաչում էր նրան, և ճամփա ընկան դեպի տուն:

Ամբողջ ճանապարհին ծերունին քաղցր զրուցում էր Անրիի հետ: Հանկարծ նա հարցրեց.

— Ասա ինձ, Անրի, դու կուզե՞ս այս գիշեր կուշտ ճաշել:

— Այն էլ ինչպե՞ս, — հառաչեց խեղճ փոքրիկը:

— Դե որ այդպես է, զավակս, լավ լսիր, թե ինչ եմ ասում քեզ, — ասաց նրան ծերունին: — Այս գիշեր աշխատիր չքնել, և հենց որ կհնչի գիշերվա ժամը տասներկուսը, դու անսխալ կարտասանես այս բառերը. «Թող Զևս պապին փոխի այն ամենը, ինչ պիտի փոխեր...» Բայց տես, որ չսխալվես: Կասես այնպես, ինչպես ես ասացի, և դու կտեսնես, թե ինչ տեղի կունենա: Ահա և և մենք հասանք, չմոռանաս այն բառերը, որ քեզ սովորեցրի, և, եթե ժամանակին ու ճիշտ արտասանես դրանք, փառավորապես կճաշես այս գիշեր:

Մինչ Անրին ուզում էր շնորհակալություն հայտնել բարի ծերունուն, նա արդեն անհայտացել էր:

Անրին, պառկած իր կուշտ անկողնում, աշխատում էր չքնել և մտքում անդադար կրկնում էր ծերունու սովորեցրած բառերը: Խոհանոցից եկող կերակուրների հաճելի բուրմունքը հասնում էր մինչև իր սենյակն ու գրգռում ախորժակը: «Մի՞թե կարող է պատահել, որ մի քանի հասարակ բառի օգնությամբ ես կարողանամ ճաշակել այս բոլոր համեղ բաներից, — թերահավատորեն մտածում էր փոքրիկը: — Հնարավո՞ր... Ես չեմ էլ հիշում, որ կերած լինեմ դրանից... Պատկերացնում եմ, թե որքա՞ն համեղ է: Ես հիշում եմ, որ երբ դեռ մայրիկը կենդանի էր, ինձ միայն վառեկի միս էր տալիս...»

Այսպես երազելով համեղ կերակուրների մասին, ինքն էլ չզգաց, թե ինչպես քունը տարավ, և դեռ ժամը իննին նա խորը քնած էր արդեն:

Հնչեց ժամը տասը: Աղախինը յուղեց հնդկահավը, աղն ու պղպեղն էլ ցանեց և մեծ հանդիսավորությամբ դրեց տաք վառարանի մեջ: Հնդկահավը երկու ժամ պետք է եփվեր: Ժերարն, ինչպես միշտ, նստած ձևավորումներ էր ձևում: Մերթ ընդ մերթ նա ընդհատում էր ձևելը և իջնում շտեմարան, այնտեղից որևէ բան բերելու: Նա բերեց նաև տաք գինին, որպեսզի մինչև սեղան նստելը մի քիչ տաքանար:

Անրին դեռ քնած էր: Նա երազում տեսավ, որ իբր թե ինքը վարում է ինչ-որ արտում, և արագավ վար է անում: Երբեք աշխատանքն այդքան հաճույք չէր պատճառել նրան: Արտի եզրին կանգնած Ժերարը բացականչում էր նրան, ասելով. «Կեցցե՛ս, փոքրիկ, դու խելացի հաջողակ ես...» Օրվա վերջն է, աշխատանքն ավարտվել է: Անրին վերադառնում է տուն և, փոխանակ սովորականի նման իր չոր հացը կրծելու և պառկելու, նա նստում է ճոխ, տոնական կարգավորված սեղանի մոտ: Հանկարծ Ժերարը կտրատում է հնդկահավը և... մի մեծ կտոր դնում Անրիի ափսեի մեջ:

Երազի գործած տպավորությունն այնքան ուժեղ էր, որ Անրին ընդոստ արթնացավ քնից:

Նոր տարվան մնացել էր ընդամենը մի քանի րոպե: Բոլորն էլ զուգված-զարդարված սպասում էին, թե երբ է հնչելու ժամը տասներկուսը:

Ժերարը հագել էր իր նոր բաճկոնը, Մարթինը՝ իր նոր կարած սպիտակ գոգնոցը: Նրանք դանդաղ ու հանդիսավոր կերպով նստեցին սեղանի շուրջը և իսկույն սկսեցին ոչնչացնել սեղանին դրված խորտիկները...

Վերջապես աղախինը բերեց նաև կարմրած ու եփած հնդկահավը, և հենց այդ պահին էլ հնչեց ժամը տասներկուսը՝ ավետելով Նոր տարին:

Ժերարը վեր կացավ տեղից, որպեսզի կտրատի հնդկահավը: Հենց նույն պահին էլ լսվեց Անրիի ձայնը, որ գոչեց. «Թող ձմեռ պապը փոխի այն ամենը, ինչ պիտի փոխվի...» և անհամբեր սպասեց այն հրաշքին, որ պիտի կատարվեր...

Բայց հակառակ իր սպասածի, ոչ մի հրաշք էլ տեղի չունեցավ: Ժերարը հանգիստ կերպով վերցրեց դանակը և խրեց հնդկահավի մսի մեջ:

Մարթինը, որ լսել էր Անրիի ձայնը, քթի տակ փնթփնթաց.

— Փոքրիկը անհանգիստ է, երևի այսօր հաց շատ է կերել:

Բայց սպասեցեք, այս ի՞նչ է կատարվում: Ի՞նչ տարօրինակ բան է. դանակը միսը չի կտրում:

— Հնդկահավը շատ կարծր է, երևում է, լավ չի եփված,— բարկացավ Ժերարը, — չի կտրվում:

— Թող ե՛ս կտրեմ,— մեջ ընկավ Մարթինը,— դու հոգնած ես, և քո ձեռքերը դողում են: Չի կարող պատահել, որ այն եփված չլինի. թևերը պետք է որ իրենք իրենց անջատվեն: Այս ասելով, Մարթինը վերցրեց դանակը և հենց ուզում էր խրել մսի մեջ, այն կատաղեց:

Ժերարը, տեսնելով այդ, թո՛ւղ հայհոյեց:

Կացի՛նը բերեք, կացի՛նը,— հրամայեց նա:

Կացինը բերին, սակայն դա նույնպես չօգնեց. ընդհակառակը, կացնի բերանը հենց դիպավ հնդկահավին՝ իսկույն բթացավ:

Անրին դռան արանքից տեսնելով այս ամենը, հասկացավ, որ ծերունին ճիշտ էր ասել և որ վճռական ժամը հասել էր: Նա օգտվելով հարմար պահից, գլուխը դուրս հանեց խոհանոցի դռնից և կամացուկ մոտեցավ սեղանին: Ափսո՜ս, սակայն, որ հնդկահավը դեռ կտրատված չէր: Արդեն վեցերորդ դանակն էր կոտրվել և շարքից դուրս եկել:



Ժերոմի դեմքը բարկությունից ճակնդեղի նման կարմրել էր, իսկ մորաքույր Մարթինի նոր, սպիտակ գոգնոցը ամբողջությամբ ծածկված էր յուղի բծերով: Նա այնպես էր կատաղել, որ եթե խեղճ կենդանին արդեն մորթված չլիներ, նա իր սեփական ձեռքերով կճզմեր:

Այն հենց այդ պահին էր, որ Անրին մոտեցավ սեղանին և բարձրացավ աթոռին: Նա զգույշ կերպով դեպի իրեն քաշեց ափսեն, մի ձեռքով խրեց պատառաքաղը հնդկահավի մսի մեջ, իսկ մյուսով ճիշտ ու հանգիստ պոկեց նրա թևերից մեկը: Զարմանքից Ժերոմի ու Մարթինի բերանները բաց մնացին, նրանք բավական ժամանակ ոչինչ չէին գտնում ասելու: Առաջինը Մարթինը սթափվեց և վախվխելով, պատառաքաղը մոտեցրեց հնդկահավին, բայց հենց որ ուզեց այն խրել մսի մեջ, իսկույն պատառաքաղը կոտրվեց:

Ժերոմը հասկացավ ամեն ինչ: Նա պարտված ու ամոթահար ասաց Անրիին.

— Անրի՛, խնդրում եմ, կտրատիր այս հնդկահավը:

— Իսկ եթե կտրատեմ, ինձ էլ մի կտոր կտա՞ք, հորեղբայր,— հարցրեց Անրին Ժերոմին:

— Դե, իհարկե, կտանք:

— Իսկ կարկանդակ էլ կտա՞ք:

— Կտանք:

— Իսկ սերո՞ւցք...

— Դե, սատանան տանի, եթե չկշտանաս, սերուցք էլ կտանք:

Այն այսպես, կատարվեց այն խորհրդավոր ծերունու տված հրաշքը, և փոքրիկ Անրին առատ կերպով վայելեց այն բոլոր համեղ կերակուրներից, որոնց մասին այնքան երազել էր:

Մեկ տարի անց, Նոր տարվա նախօրեին, Անրին դարձյալ գնում էր քաղաքի ճանապարհով և դարձյալ հանդիպեց այն ճերմակամորուս բարի ծերունուն, բայց որովհետև փոքրիկը շատ էր գիրացել, ծերունին չճանաչեց նրան:

Թարգմ. Մ. ԱԼՓՈՒՆՅԱՆ



# ԵՐԿՈՒ ԾԻԾԱՌ

ՍԻՐՎԵՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ



Երկու ծիծառ
Ամեն տարի
Գարնանը
Վերադառնում,
Բույն են շինում
Մեր տանը:
Երկու ծիծառ
Ամեն տարի
Ամռանը
Ջու են ածում,
Ճտեր հանում
Մեր տանը:



Երկու ծիծառ
Ամեն տարի
Աշնանը
Իրենց բույնը
Պահ են տալիս
Մեր տանը:
Երկու ծիծառ
Ամեն տարի
Ձմռանը
Սիրով, բարով
Միշտ հիշվում են
Մեր տանը:

# ՊԱՐԾԵՆԿՈՏ ԱՅԾԻԿԸ

ԷԴՎԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ



Ես այծիկն եմ մկկան,
Ինձ պես այծեր շա՜տ քիչ կան.
Հապա նայեք մորուքիս,
Սևուկ-մևուկ աչքունքիս,
Փայլուն ու նուրբ կճղակիս,
Բրդոտ, թել-թել մուշտակիս...
Բա՜ ուսերս փառավոր,
Բա՜ պոզերս ահավոր,
Բա ոտքերս բարալիկ,
Փոքրիկ պոչս՝ խաղալիք...
Չէ՛, ողջ աշխարհն է վկա,
Ինձ պես այծիկ է՛լ չկա։

# ԿԱՄՈՒՐՋԸ

Գ. ՍԱՊԳԻՐ

Կանգնել է ուղտը
Մեծ գետի վրա։
Անցնում են մարդիկ
Սապատով նրա։
Գնացքն է թռչում
Սապատով նրա,
Շնչում է, ճչում
Շոգեքարշն ահա։
Իսկ ուղտը, ուղտը
Չի հոգնում երբեք,
Թեկուզ չի ուտում,
Չի խմում երբեք։
Նավերն են նրա
Փորի տակ լողում։
Իսկ ուղտն այդ քա-
րե
Չի քրտնում շոգից,
Ցրտից չի դողում։

Թարգմ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆ

# ԻՆՉՊԵ՞Ս ՉՀԱՎԱՏԱՄ ԱՉՔԵՐԻՍ

Լ. ԽԱՆՅԱՆ

Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

Նրանք հյուր էին եկել Ամերիկայի Միացյալ Նահանգներից։ Այդ վաթսունից անց մարդիկ՝ հինգ տղամարդը և երեք կինը, չնայած իրենց համար այնքան էլ հեշտ չէր ձեռնարկել նման հեռավոր ճանապարհորդություն, այնուամենայնիվ, մեծ ցանկություն են ունեցել, ինչպես իրենք էին ասում, «ծանոթանալ այս փոքր, բայց վերածնված



երկրի, նրա ժողովրդի հետ, որին աշխարհը դիտում է սիրով ու հարգանքով, բարձր գնահատելով նրա բազմադարյան հարուստ կուլտուրան, անչափ ուրախանալով այս ժողովրդի երջանիկ ներկայով և ավելի փայլուն ապագայով»։

Ամեն ինչ՝ մեր տուֆակերտ շենքերը, կոլտնտեսային այգիները, գեղատեսիլ Սևանը, հինավուրց Էջմիածինը, նոր գործարանները, կուլտուրայի օջախները ամերիկացի հյուրերին անկեղծ ուրախություն էին պատճառում։ Վաղ առավոտից մինչև ուշ երեկո, հաճախ էլ չհասցնելով ժամանակին սնվել, նրանք շրջում էին մեր հանրապետության տեսարժան վայրերը, ձգտելով ինչքան հնարավոր է շատ բան տեսնել և շատ բան իմանալ մեր մարդկանց, նրանց կյանքի, գործերի մասին։

Բայց ինչ-որ արտակարգ ջերմությամբ էին ծանոթանում նրանք Հայաստանի երեխաների, երիտասարդության կյանքին։ Իսկ տիկին Բարբարա Սմիթը ամեն անգամ՝ լիներ մանկապարտեզում, դպրոցում, այգում կամ ուղղակի փողոցում, հայ երեխայի հանդիպելիս անպայման մոտենում էր, փաթաթվում ու գուրգուրում նրան։ Երբեմն էլ չզսպելով արցունքները, երեխային մոտեցնում էր իրեն, ուշադիր զննում, սեղմում կրծքին ու համբուրում և նորից երկար-երկար նայում նրա աչքերի մեջ, ցանկանալով կարծես թե փոքրիկի միամիտ ժպտալից հայացքում գտնել ինչ-որ միայն իրեն հայտնի խորհրդավոր բան։

Մենք՝ նրան ուղեկցողներս, երեխաների ծնողներն ու անծանոթ մարդիկ հարգանքով էինք վերաբերում ծեր ամերիկուհու զգացմունքներին, ենթադրելով, որ այդ հուզիչ պահերին նա հիշում էր հեռավոր հայրենիքում գտնվող սիրելի թոռնիկներին։

Բայց պատճառն այլ էր...

Չորս տարի առաջ ութսունմեկ տարեկան հասակում վախճանվեց հորեղբայրս,— Երևանից մեկնելու նախօրյակին պատմեց տիկին Բարբարան։— Նա շատ էր սիրում ճանապարհորդել, լինել նորանոր երկրներում, ծանոթանալ տարբեր ազգերի մարդկանց հետ։ Իր երկարամյա կյանքի ընթացքում շրջել էր համարյա ամբողջ աշխարհը։ Մի քանի տարի ապրել էր Արևելքում, Կովկասում և ամեն անգամ տուն վերադառնալիս իր հետ բերում էր լուսանկարներ, հետաքրքիր գրքեր, հուշանվերներ։ Մեր բարեկամներն ու ծանոթները մեծ հաճույքով հավաքվում էին մեր տանը և հետաքրքրությամբ լսում հորեղբորս պատմածները։

Մի անգամ (դա 1915 թվականի հունիս թե հուլիս ամիսն էր) նա նոր էր վերադարձել Ամերիկա։ Ինչպես միշտ, այս անգամ էլ մեզ մոտ էին հավաքվել մեր բարեկամները, հարևանները և ծանոթները։ Սակայն հորեղբայրս շատ մռայլ էր, բոլորովին տրամադրություն չուներ խոսելու։ Նրան ինչ-որ բան մտատանջում էր։ Թեյի ժամանակ մայրս հավաքվածներին բողոքելով, որ ես վատ եմ ուտում (այդ ժամանակ տասներկու տարեկան էի), ինձ առաջարկեց բուլկի՝ վրան մեղր ու կարագ քսած։ Երբ հրաժարվեցի, հորեղբայրս անսպասելիորեն տեղից բարձրացավ և հուզված, մոտենալով ինձ, նախատինքով ասաց. «Այնտեղ հայ երեխաները սովամահ են լինում, վայրի խոտ են ուտում, իսկ դու նազ ես անում և հրաժարվում մեղր ու կարագից...»

Այդ օրը մինչև ուշ գիշեր մեզանից ոչ ոք չընկեց։ Բոլորս լուռ լսում էինք հորեղբորս, որը շրջելով Արևմտյան Հայաստանի քաղաքներն ու գյուղերը, իր աչքերով տեսել էր թուրքերի վայ

րագրությունները անմեղ հայերի հանդեպ, հայ մանուկների, կանանց ու ծերերի կոտորածը: «Ամեն քայլափոխին, ամեն պատի տակ, պատմում էր հորեղբայրս, կարելի էր հանդիպել որբ երեխայի, որը ոտաբոբիկ, ցնցոտիների մեջ, գետնին պառկած հազիվ կարողանում էր աղերսել. «հա՛ց, հա՛ց»: Այն օրվանից անցել է հիսուն տարի, բայց այդ՝ բառը (որը Բարբարա Սմիթը արտասանեց հայերեն) ընդմիշտ տպավորվել է հիշողության մեջ...

Անցան տարիներ, շարունակեց նա, սակայն մեր ընտանիքում երբեք չէին մոռանում տարագիր հայերի ճակատագիրը: Իսկ երբ քսան թվականի նոյեմբերին Հայաստանը դարձավ սովետական հորեղբայրս, որը կոմունիստ չէր, այնուամենայնիվ համոզմունք էր հայտնում, որ հայերն այլևս երբեք իրենց կյանքում նման դառնություններ չեն կրի: Եվ ամեն անգամ թերթերում կարդալով կամ ռադիոյով լսելով Սովետական Միության, Հայաստանի մասին որևէ լավ լուր, սրտանց ուրախանում էր և հույս հայտնում, որ երբևէ իրեն կհաջողվի սեփական աչքերով տեսնել հայ ժողովրդի վերածնունդն ու երջանկությունը:

Հիվանդության ու ծերության պատճառով հորեղբայրս չկարողացավ կրկին անգամ այցելել Հայաստան, անձամբ համոզվել նրանում, որ հայ ժողովուրդը ոչ միայն ընդմիշտ փրկվեց ֆիզիկական ոչնչացումից այլև կարողացավ կարճ ժամանակամիջոցում ապրել այնպիսի վերելք, հասնել ծաղկման այնպիսի մակարդակի, որ նրան ներկայումս մարդկությունը իրավամբ դասում է աշխարհի ամենազարգացած, քաղաքակիրթ ժողովուրդների շարքը:

Ես մայր եմ, ունեմ երեխաներ, թոռներ, իսկ ամեն մի մայր՝ լինի դա ամերիկուհի թե հայ, ֆրանսուհի թե ռուս, արաբ թե հնդկուհի՝ ամբողջ հոգով ցանկանում է ինչպես իր, այնպես էլ բոլոր երեխաների երջանկությունը:

Հիսուն տարի առաջ, վերադառնալով մահից, սովից, աղքատացած, արյունաքամ եղած Հայաստանից, հորեղբայրս հաճախ սրտի կսկիծով կրկնում էր. «Տեր աստված, կգա՞ արդյոք մի օր, որ հայ երեխայի սրտից ընդմիշտ անհետանա վախի զգացումը, մի օր, որ նա ձեռքը մեկնած հաց չմուրա... Երանի թե ողջ մնայի և այդ օրը իմ աչքերով տեսնեի»:

Ինչ որ չհաջողվեց հորեղբորս, հաջողվեց իրագործել ինձ: Ահա թե ինչու, ծանոթանալով ձեր հանրապետության, ժողովրդի, նրա մեծամեծ հաջողությունների հետ, ինձ առանձնապես ուրախություն էր պատճառում հանդիպել ձեր մանուկներին ու դպրոցականներին, տեսնել նրանց և համոզվել, որ սոցիալիզմի շնորհիվ հայ ժողովուրդը ընդմիշտ փրկվեց օտարների սրից և ստեղծեց մի կյանք, որը բերեց իր մատաղ սերնդին երջանկություն:

Դրանում ես հաստատ համոզվեցի: Եվ ինչպե՞ս չհավատամ սեփական աչքերիս...

## ՄԱՆՈՒԿՆԵՐԸ



Չգիտեին մանուկներն այն,
Որոնք ընկա՛ն հին նետով,
Թե աշխարհում այս անսահման
Ինչ կլինի կյանքն հետո:

Բայց լավ գիտեն մանուկները
Մանուկները մեր լուսաշ:
Գիտակցում են փոքրիկները
Ի՛նչ է՛ եղել կյանքն առաջ:





# ԴԵՊՔԵՐ ԴԵՄՔԵՐ ՏԱՐԵԹՎԵՐ

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԵՐԳԻՉԸ

Բակի միակ թթենին կանաչել ու զուգվել էր նորաբողբոջ տերևներով: Փոքրիկ Հակոբը հարևանենց սանդուղքը բերել, բարձրացել էր ծառը և իրենց շերամների համար տերևներ էր պոկում ու լցնում ծոցը: Վաղ առավոտվա անդորրության մեջ լսվում էր միայն թթենու մոտով վազող առվակի զվարթ կարկաչը:

Հանկարծ օդը ճեղքելով կողքի բակից Հակոբին հասավ մի հաճելի երգի ձայն: Երգողը իրենց հարևանն էր, երգեցողության ուսուցիչ Ավետիք վարժապետը: Բայց Հակոբին անծանոթ էր այդ երգը, տղան առաջին անգամն էր լսում: Վարժապետի սրտաբուխ, թավ ձայնը քանի գնում ավելի էր ուժեղանում ալեծածան որոտումով: Հակոբը մեխվել էր տեղում և գմայլանքով կլանում էր նոր, անծանոթ երգը:

— Ազատություն սիրե՜-ցի՜,— խիզախում էր փափուկ ձայնը իր կրծքային շոյող ջերմությամբ՝ մերթ ծանր ու փառահեղ, մերթ էլ՝ արագ շեշտերով:

Այդ երգը, ասես, գարնանային տաք արև լիներ, թարմացնող մի շունչ, որ տարածվելով տիրապետել էր շրջապատի վրա և պատանի Հակոբի ողջ էությունը ներշնչել մի թրթռուն, վեհ տրամադրությամբ:

— Ազատությո՜ւն, գոչեցի՜... ի՜ի՜,— ալեկոծվում էր ձայնը և ավելի ու ավելի ներս խուժում՝ նվաճելով Հակոբի մանուկ հոգին:

Ավետիք վարժապետը երգում էր ցարական բանտում զոհված ազատաբաղձ բանաստեղծ Միքայել Նալբանդյանի հռչակավոր «Ազատն աստվածը»:

Շատ չանցած՝ իր գիմնազիստ ընկերներից Հակոբն արտագրեց այդ բանաստեղծությունը, անգիր սովորեց և ինքն էլ սկսեց երգել: «Խոստովանում եմ,— տարիներ հետո գրում էր նա,— այդ բանաստեղծությունն էր, որ առաջին անգամ գիտակցորեն խանդավառեց իմ հոգին, մեջս ներշնչեց ազատության գաղափարը ու ինձ համար այնուհետև դարձավ պաշտելի»: Իսկ երբ Հակոբը դարձավ Հակոբ Հակոբյան և սկսեց ոտանավորներ հորինել, Միքայել Նալբանդյանի նման նա էլ իր գրիչը նվիրեց ազատության մեծ պայքարին:

1905 թվականին Ռուսաստանի բանվոր դասակարգը ոտքի էր ելել կործանելու ցարական կարգերը: Ահա այդ օրերին էր, որ մարտակոչի նման հնչեց Հակոբ Հակոբյանի խրոխտ ձայնը.

*Հե՜յ, ծե՜զ մատաղ, բանվո՛ր տղերք,*
*Մե՛կ էլ, մե՛կ էլ մի զարկ տվեք,*
*Մի զա՛րկ տվեք ցարի գահին,*
*Որ խորտակվի նա հիմնովին:*

Այդ բանաստեղծությունը մեծ հռչակ բերեց Հակոբյանին: Հայ հեղափոխական երգչի համբավը լայնորեն տարածվեց բանվորական շրջաններում: Բոլշևիկյան «Կայծ» թերթում սկսեցին իրար հաջորդել նրա հեղափոխական բանաստեղծությունները: Իսկ 1906 և 1907 թվականներին դրանք լույս տեսան առանձին ժողովածուներով («Աշխատանքային երգեր», «Հեղափոխական երգեր»):

Հակոբ Հակոբյանին չկարողացան ընկճել ցարական բանտերն ու հալածանքները: Նա միշտ աներեր կանգնած էր բարիկադի վրա, երգում էր մոտալուտ հաղթանակը և ոգևորում հեղափոխության զինվորներին.

*Սովոր բանտերի, բիրտ տառապանքի,*
*Շատ ես դիմացել, դիմացիր էլի,*
*Եղբայր սիրելի,*
*Հավատ ունեցիր հաղթիդ վերջնական,*
*Այսօր չէ վաղը քոնն է ապագան...*

Նա իր գրիչը ցած չդրեց նույնիսկ այն ժամանակ, երբ ժամանակավորապես պարտվեց հեղափոխությունը, և միապետության ռազմադաշտային դատարանները դաժան պատժի էին ենթարկում հեղափոխականներին: Հակոբյանը երգեց ընկած հերոսների հիշատակը՝ զայրույթի լեռներ կուտակելով ցարական դահիճների դեմ, երգեց մոտեցող հաղթանակի «9-րդ հզոր ալիքը», միաժամանակ հեղափոխության շարքերից դուրս կանչելով բոլոր վարանողներին.



*Եվ վա՜յ է նրան, ով այս վեհ ժամին*
*Եվ կկարանի, և կթուլանա,*
*Ով իր ձեռքերի կոշտերի վրա*
*Հույս չի ունենա։*

*Ո՛չ, զարկե՛ք, քանի երկաթն է դեռ տաք,*
*Սուրն ձեռքերից պատրաստ միշտ մնա,*
*Իսկ ով մաքառման դեռ չի ընդունակ*
*Շարքերի միջից թող անհետանա։*

Այդ տարիներին Հակոբյանի գրած լավագույն գործերից է նաև «Նոր տավիղ» պոեմը, որը բարձր գնահատականի է արժանացել մեծ Լենինի հավատարիմ աշակերտ ու զինակից Սուրեն Սպանդարյանի կողմից։

1917 թվականին իրականացավ աշխատավոր մարդկանց վաղեմի երազանքը. կործանվեց անեծք ցարիզմը և տեղծվեցին խորհրդային կարգեր։ Հեղափոխության խանդավառ երգիչ Հ. Հակոբյանը սկսեց հանդես գալ սոցիալիստական շինարարությանը նվիրված բանաստեղծություններով ու պոեմներով։ Ու մինչև խոր ծերություն բանաստեղծը մեծ եռանդով գովերգեց վերափոխվող նոր կյանքը և այն կառուցող խիզախ շինարարներին։ «Վոլխովստրոյը» ու «Բոլշևիկ է Շիր-Կանալը» այդ թեմայով գրված նրա լավագույն պոեմներից են։

Լրացավ պրոլետար Հոկտեմբերի խիզախ երգիչ Հակոբ Հակոբյանի ծննդյան 100 տարին։

Պ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

## Նշանավոր մարդկանց կյանքից

Հանճարեղ ֆիզիկոս Նյուտոնը հայտնի էր իր արտասովոր ցրվածությամբ։ Բոլորին հայտնի է ժամացույցի և ձվի մասին անեկդոտը։ Նյուտոնը ժամացույցը դնում է ջրի մեջ և ուշադրությամբ նայում է ձվին, որպեսզի հետևի, թե քանի րոպե պետք է եփվի։ Հավանաբար այդ րոպեին գիտնականը տարված էր բոլորովին այլ մտքերով։

Անգլիացի ֆիզիկոս Ֆարադեյի հետ մի տարօրինակ դեպք տեղի ունեցավ։ Երկու ամիս շարունակ նա գլուխ էր կոտրում մի խնդրի լուծման վրա։ Վերջապես, վճռելով այն, նա ուղարկեց խմբագրություն։ Պարզվեց, որ մի քանի տարի առաջ ինքը վճռել էր այդ նույն խնդիրը, որը և վաղուց տպագրված էր։

Ճշմարիտ է, բացականչեց Ֆարադեյը, զարմանալի է, որ ես ինքս չհիշեցի։

Երկու տարի առաջ Նյու Յորքում լեզվագիտության կոնգրես գումարվեց։ Իտալացի պրոֆեսոր Կարլո Տալիավինին բեմ բարձրացավ և հիսուն լեզուներով ողջույնի խոսք ասաց։

Պրոֆեսոր Տալիավինին բանասիրական գիտությունների դոկտոր է։ Նա գիտե 120 լեզու և Բարբառ Հունաստանի համալսարանում նա դասախոսություններ է կարդում 25 լեզուներով։

Տասներկու տարեկան հասակում Տալիավինին 7 լեզու գիտեր։

Այն հարցին, թե ինչպես է նրան հաջողվել այդքան լեզուների տիրապետել, պրոֆեսորը պատասխանել է.

Դրա համար թերևս միայն ընդունակությունը բավական չէ, անհրաժեշտ է նաև համառ աշխատանք։ Ես կարծում եմ, որ ամենադժվարը, դա երկու-երեք լեզու սովորելն է, որից հետո անհամեմատ հեշտանում է։

Պրոֆեսոր Կարլո Տալիավինին շարունակում է ուսումնասիրել նոր կենդանի և մեռած լեզուներ։

Մի քաղաքացի կռվեց Սոկրատի հետ և զայրույթի պահին բացականչեց.

Թող մեռնեմ, թե վրեժ չլուծեմ քեզանից։

Իմաստունը քմծիծաղ տվեց և հանգիստ պատասխանեց.

Թող մեռնեմ, թե քեզ իմ բարեկամը չդարձնեմ։

# ԱՍՏՂԻԿ

№ 2 ՄԱՅԻՍ 1966

## ՄԱՐՏԱԿԱՆ ՓԱՌՔԻ ՈՒՂՈՎ

Անցյալ տարվա հոկտեմբերին մեր դպրոցի պիոներները մեծ հանդիսավորությամբ իրենց եղբայրներին և ավագ ընկերներին ճանապարհեցին սովետական բանակ եվ որպեսզի չխզվեր բարեկամական կապը զինվորների հետ, նրանք այցելեցին N զորամասի մարտիկներին, հուշանվերներ, հուշադրոշներ և ալբոմներ փոխանակեցին Այդ աշխատանքների համար մեր պիոներական դրուժինան նվաճեց շրջանային վիմպելը՝ «Մարտական փառքի աստղը»: Պիոներներն ավելի ոգևորվեցին։

Դրուժինայի «Մարտական փառքի արշավ» անսամբլը սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի 48-րդ տարեդարձի առթիվ դպրոցում կազմակերպեց ոււոյյուցիոն երգերի ուսուցման և բացահայտման ու Հայրենական պատերազմներում զոհված հայ հերոսների փառաբանման շաբաթ Այդ օրերին պիոներները սովորեցին ռևոլյուցիոն շատ երգեր, իմացան, թե այդ երգերը երբ և ինչպես են ստեղծվել, ովքեր են դրանց հեղինակները

Շաբաթվա 2-րդ օրը դրուժինան հանդիպում կազմակերպեց զորամասի մարտիկների հետ Պիոներները համերգ տվեցին զինվորների համար

Դպրոցում կազմակերպվեց հանդիպում քաղաքացիական կռիվների մասնակից ընկ. Հովհաննիսյանի հետ Նրան ընդունեցին պատվավոր պիոներ

ԼԵՆԱ ԴԱՐԲԻՆՅԱՆ

Երևանի 68-րդ դպրոցի ավագ ջոկատավար

## ԱԹԱՆՑ ԵՐԿՏԱՐԵՑԻՆԵՐԻ

Ուսումնական տարին նոր էր սկսվել: Պիոներները համախմբվել էին ջոկատավար Հակոբ Դոլգոյանի շուրջը և սպասում էին իրենց հարցի պատասխանին: Բայց ջոկատավարը համառորեն լռում էր, իսկ հետո հարցրեց.

— Այ, Համբի՛կ, ես կուզենայի, որ ոչ թե ես, այլ ջոկատի խորհուրդը որոշեր այն հարցի մասին, որով [illegible]:

Պիոներները հանկարծ աշխուժացան և սկսեցին վիճել: Երկար մտածելուց հետո 5-րդ «դ» դասարանի պիոներները որոշեցին իրենց ջոկատն անվանակոչել [illegible] անունով: Բայց նախ պետք էր բացահայտել [illegible]: Դրա համար նրանք պատրաստում անցկացրին «շատ [illegible]» դասեր, այնտեղ վառ [illegible] և [illegible]:

Այժմ [illegible] համբերությամբ են խոսում իրենց դասարանի մասին. «[illegible]» [illegible] մեծամասնությամբ. «վառ» [illegible] ստացողներ բոլորովին չը- [illegible] դպրոցն ավարտել առանց [illegible]: Նրանք որոշել են [illegible]:

Երևանի 119-րդ դպրոցի պիոներական դրուժինայի խորհուրդ

## ՄԵՐ ԵՐԱԶԱՆՔԸ

Քարե՛ր, քարե՛ր, քարե՛ր...

Մի ժամանակ այդպիսին էր մեր սպորտհրապարակը: Տարիներ շարունակ երազում էինք ունենալ գեղեցիկ ու մեծ մի սպորտհրապարակ, որտեղ կարողանայինք անցկացնել մեր ֆիզկուլտուրայի դասերը: Եվ բոլորս սկսեցինք աշխատել: Մեզ օգնում էր նաև ողջ ուսուցչական կոլեկտիվը: Անցան ամիսներ... Այժմ այդ փշոտ և քարքարոտ տեղամասում փռվել է մեր գեղեցիկ սպորտհրապարակը: Կառուցմանը առավել աչքի ընկան պիոներներ Սարգիս Փիլոյանը, Գագիկ Մելիքյանը, Ծաղիկ Գասպարյանը, Թամարա Բաղդասարյանը, Սաթիկ Մարտիրոսյանը, Պարգև Գասպարյանը, Աշոտ Հովսեփյանը և շատ-շատ պիոներներ, որոնց անունները հնարավոր չէ թվել առանձին-առանձին: Աշխատանքներին ակտիվ մասնակցեցին նաև պիոներական 3-րդ, 4-րդ, 5-րդ, 6-րդ, 7-րդ և 8-րդ ջոկատները:



Այժմ մեր սպորտհրապարակում կարող ենք անցկացնել վոլեյբոլի, բասկետբոլի, ֆուտբոլի առաջնության մրցումներ:

Երևանի 70-րդ դպրոցի Գ. Ս. Տիտովի անվան պիոներական դրուժինայի խորհրդի նախագահ

ԹԱՄԱՐԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆ



ՇՈՂԱՑԵ՛Ք ԼԵՆԻՆՅԱՆ ԱՍՏՂԵՐ

# Ճարտարապետն պատրաստվածը

ՆՈՐԱՅՐ ԱԴԱԼՅԱՆ

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

—Յոթանասուներեք. գիծ. վաթսունմեկ.—ասաց Արամը։

— Տասներկու. գիծ. քսանչորս,—անմիջապես ասաց Աշոտը։—Իննով հինգ։

Հետո նրանք նայեցին աջ ու ձախ, բայց ավտոմեքենա այլևս չէր երևում։ Հարկավոր էր սպասել, որպեսզի բացվեր նոր հաշիվ։

Առջևում խճուղին էր, որը ոլոր-մոլոր գալիս էր ու գնում, մոտենում էր ու հեռանում։

Մի քանի օր առաջ Արամը այս նույն խաղում Աշոտին տասնյոթով տասնչորս հաղթեց։ Յուրաքանչյուրն ունի իր թվանշանը, որը համեմատում է անցնող ավտոմեքենաների համարների հետ։ Ում թիվը շատ համընկավ, նա էլ տանում է։

Այժմ էլ նրանք նստել էին գետի ավազոտ ափին՝ ծնկներով ոտքերը գրկած։ Ջնհալը բարձրացել էր լեռների գագաթները, և ջուրը սկսել էր բարակել։ Ամռանը գետը կդառնա փոքրիկ-փոքրիկ առու, և հարկավոր կլինի պատնեշ սարքել լողանալու համար։

Հետևում գյուղն էր։ Գյուղից ծուխ ու զոլոշի էր ելնում, լսվում էր հորթի բառաչ ու գառան մայուն։

— Այսօր կիրակի է,—մեջքին պառկելով, ասաց Աշոտը։

— Այսօր իսկական կիրակի է,—հայացքը խճուղուց չկտրելով՝ հաստատեց Արամը։

Նրանք լավ գիտեին, որ երեկ շաբաթ էր, այսօր կիրակի է, իսկ վաղը կլինի երկուշաբթի և նորից դպրոց կգնան, բայց ուզում էին մի ավելորդ անգամ համոզվել։

Վերևում կապույտ-կապույտ երկինք և պայծառ պայծառ արև կար։ Մի երկու տասնյակ սպիտակ-սպիտակ բադեր շորորալով մտան գետի հունը։

— Երեսունյոթ. գիծ. քառասունմե՛կ,—հանկարծ բացականչեց Արամը։

— Ջե՛ մի... Քառասուներկու, գիծ. տասնութ,—տեղից ցատկելով, հակառակեց Աշոտը, իսկ ավտոմեքենան կտրուկ շրջադարձ կատարեց և մեծ արագությամբ հեռացավ։

— Վեցով ինը...

— Տասով հինգ...

Նրանք գրկախառնվեցին, ընկան ավազին և մի քանի րոպե իրար տակ ու վրա էին անում։ Վերջը որոշեցին այդ ցեխոտ ավտոմեքենան չհաշվել, որովհետև զուգե ոչ երեսունյոթ էր, ոչ քառասուներկու, այլ մի ուրիշ բան, որ կարգին չէր երևում։

Պառկել էին մեջքի վրա, և յուրաքանչյուրը մտածում էր, որ ինքը միավոր կորցրեց ու չէր հաշտվում այդ վիճակի հետ։

Արդեն իննով տասնմեկ էր, երբ Աշոտը հարցըրեց.

— Տեսնես արևը քանի՞ տարեկան է։

Արամը գլուխը քորեց և ասաց.

— Հարյուր հինգ տարեկան է, որովհետև երբ պապս ծնվեց, արևը կար։

Երկուսն էլ շատ գոհ էին՝ մեկը իր պատասխանից, մյուսը՝ իր հարցից։

Երկուսն էլ նայում էին արևին, որը կապույտ երկնքի վրա կարծես ոսկե բզեզ լիներ, և չէին կկոցում աչքերը։ Դա մի չտեսնված և չլսված արև էր։

—Հանելուկ, հանմանելուկ, ծերը՝ ծաղիկ, տակն՝ ավելուկ,—արտասանեց Աշոտը։—Ի՞նչն է...

— Մի բան էլ ես ասեմ,—ոգևորվեց Արամը։—Անա-անա, կարմիր դանա, սոխակը գա, դուռը բանա...

Նրանք նորից կպան իրար, թավալ եկան և ծիծաղելով բաժանվեցին։

Այս անգամ պառկել էին երեսնիվայր՝ թշնամանքի ծանր տրամադրությամբ։ Մեկը երազում էր հաշիվը հավասարեցնել, հետո զուցե մի բան դուրս գա, մյուսը ուզում էր իր օգտին գրանցել նոր միավորներ, որպեսզի հաղթանակը բացարձակ լինի, բայց խճուղին ոչ մի հույս չէր տալիս։

Անցավ կես ժամ։

Տղաները փակել էին աչքերը և ննջում էին քնած։ Մի երկու անգամ աղմուկ լսվեց, և նրանք շտապ բարձրացրին գլուխները։ Դա պարզ մոդելի մի ինքնաթիռ էր, որ հեռավոր դաշտերի ու անտառների վրա արդեն երրորդ օրն էր, ինչ սպիտակ փոշի էր ցանում։

Այդպես մի կես ժամ էլ անցավ։

Նրանք կես քուն էին, կես արթուն, երբ մի անսովոր ձայն որսացին, որ աստիճանաբար ուժեղանում էր։ Շփոթված և զարմացած ոտքի ելան։ Խճուղին ամայի էր։ Ինքնաթիռը վայրէջք էր կատարել։ Դաշտերի ու անտառների վրա իջել էր թափանցիկ մշուշ։ Եվ երկինքը ավելի կապույտ էր, ու արևը ավելի պայծառ։

— Ծիծեռնակները...—աչքերին հովանի արած, գրեթե միաժամանակ բացականչեցին նրանք...

Ծիծեռնակները եկան...

Այնքան վաղուց ծիծեռնակ չէին տեսել, որ կարծես առաջին անգամ էին տեսնում՝ հիանում էին

ու թռչկոտում: Աշխարհը ծիծեռնակ էր, ծիծեռնակը՝ մի ամբողջ աշխարհ, որ երգելով պատմում էր չեղած ու եղած բաներ: Իսկ այս արանքում ծիծեռնակների երամը եկավ անցավ նրանց գլխավերևով ու գնաց հեռացավ: Մնացին գետն ու խըճուղին, դաշտերն ու անտառները, երկինքն ու արևը և ոչ մի ավտոմեքենա:

— Ծիծեռնակները երևան թռան,— ուշքի գալով ասաց Աշոտը:

— Հիմա Սոնան կտեսնի նրանց,— խոր շունչ քաշելով ասաց Արամը:

— Երանի Սոնային...

— Երանի ծիծեռնակներին...

Այնուհետև, ինչ-որ զգացման թելադրանքով, նրանք ոչինչ չասացին:

Սոնայի հետ նրանք անցյալ տարի ծանոթացան ու մտերմացան: Աղջիկը գյուղ էր եկել հանգըստանալու և կազդուրվելու: Երեքով շրջել էին դաշտերն ու անտառները, լեռներն ու ձորերը, հավաքել էին մոշ ու տխիլ, սունկ ու ծաղիկ, և շոգ ամառը դարձել էր հեքիաթ:

Մի օր էլ աղջկա հայրը փայլուն ավտոմեքենայով եկավ գյուղ, և տղաները հասկացան, որ իրենք բաժանվելու են: Աղջիկը ուրախացավ, նըրանք զաղտնի տխրեցին, և ուրախությունն ու տխրությունը խառնվեցին իրար:

Երեկո էր: Հեռավոր լեռան թիկունքից արևը իր վերջին ճառագայթներն էր թաթախում կապտամանուշակ երկնքի մեջ: Նրանք ժամանակից դեռ շատ առաջ եկել կանգնել էին այս նույն տեղը:

Ավտոմեքենան գյուղից դանդաղ ու զգուշությամբ իջավ, հասավ խճուղուն, շրջվեց ձախ և արագություն բացեց: Սոնան տեսավ հեռվում կանգնած տղաներին և մեքենայի հետևի պատուհանից թափահարեց ձեռքը: Իսկ երբ տղաները հասկացան, թե ինչ է կատարվում, և հրաժեշտի նշան արին, որը ստացվեց շատ տխուր ու անշընորհք, մեքենան արդեն չէր երևում:

— Դու սիրում ես Սոնային,— ծիծեռնակների ճովողյունի արձագանքը ականջում, ասաց Աշոտը:

— Դու ես սիրում նրան,— կարմրելով և ամաչելով ասաց Արամը:

Մեկը մյուսին ասաց այն, ինչը իր գաղտնիքն էր:

Եվ նրանցից ոչ մեկը չխոստովանեց, որ ինքը Սոնային սիրում է:

— Հանմանելուկ... ծերը՝ ծաղիկ...

— Անա... դանա... դուռը բանա...

Եվ ձայնը աղավաղվելով խզվեց ու խզվելով աղավաղվեց:

Դառկել և չէին խոսում: Նրանք ուզում էին իրար մի լավ բան ասել, բայց վախենում էին չստացվի:

Խճուղու հեռավոր ոլորանում ավտոմեքենա ե-



րևաց: Դա ցեխոտ բեռնատարն էր, որը մի երկու ժամ առաջ տղաներին այնքան հուզմունք էր պատճառել:

— Երեսունյոթ, գիծ, քառասունմե՛կ,— բացականչեց Աշոտը:— Դու դարձար տասը:

— Քառասուներկու, գիծ, տասնութ,— չհամաձայնեց Արամը:— Ես տարվեցի:

— Տասով տասնմեկ, եթե կուզես, տասնմեկով տասնմեկ, որովհետև մի անգամ քո «7»-ը չնկատեցիր,— մեղավորի նման և խնդրելու պես ասաց Աշոտը:

— Իննով տասներկու,— հուզված ասաց Արամը: Այսօր մենք ավելի երջանիկ ենք: Ծիծեռնակները անցան մեր գլխավերևով:

Ոչ մեկի համառությունը չհաղթեց:

Հանկարծ, անսպասելի, չպատճառաբանված նըրանք սկսեցին վազել: Վազեցին, իջան, բարձրացան և երեսնիվայր ընկան բլրալանջի շուռ տված սև ցելերի մեջ, ուր ճնճղուկները որսում էին որդ ու մժեղ, կտցահարում էին ծիլ ու անցյալ տարվա ցողուն:

Ինչ-որ բան սկսվեց, և ինչ-որ բան վերջացավ:



## ՃԱՆԱՊԱՐՀ ԴԵՊԻ ԱՆՑՅԱԼԸ

Դավիթը ձանձրանում էր: Օրը դեռ նոր էր սկսվում, բայց նա արդեն հասցրել էր վազվզել այգով մեկ, կուշտ խաղալ բակի բրդոտ շան հետ և հիմա կանգնել էր ու չգիտեր ինչով զբաղվել:

Եղանակը, հակառակի նման, անսպասելիորեն լավ էր: Դավիթը սկսեց քայլել ծառուղու երկայնքով, հենց այնպես, ուր աչքը կտրում էր:

Ճիպոտը թափահարելով տղան մոտեցավ կաղնուտից ոչ հեռու գտնվող բլուրին: Նրա գագաթից լավ էին երևում ճանապարհը, որ տանում էր հարևան գյուղը, և նույնիսկ ծայրի տան կղմինդրե տանիքը:

Դավիթը մի շնչով բարձրացավ բլրի գագաթը և կտրիճորեն թափահարեց ճիպոտը՝ ժիկ-ժիկ-ժիկ: Հանկարծ ուռենու ճյուղը դուրս թռավ ձեռքից: Դավիթն այս ու այն կողմ նայեց, բայց...

«Կարծես գետնի տակ անցավ».— մտածեց տղան: Հենց իսկապես այդ պահին էլ տեսավ մի խոռոչի մեջ խրված ճիպոտի ծայրը:

Դավիթն անմիջապես ցանկացավ իմանալ՝ մե՞ծ է արդյոք խոռոչը և որևէ շունչ-արարած ապրու՞մ է այնտեղ: Ուժ չխնայելով, նա սկսեց փորփրել, դուրս թափել հողը, այնքան, որ գետինը փլվեց և անցք բացվեց դեպի գետնախորշը: Այ քեզ բա՜ն, սա պարզապես ոչ թե խորշ է, այլ քարայրի մուտք:



Եվ ոչ ոք չգիտե այդ մասին ու միայն ինքը՝ Դավիթն է առաջինն այնտեղ մտնում:

Դա չափազանց գայթակղիչ էր: Տղան անցքով իջավ և հայտնվեց մի նեղ միջանցքում: Նա առաջ շարժվեց՝ աչքը չկտրելով և շարունակ շուռ գալով քարայրի մուտքից ներս թափանցող արևի թեք ճառագայթներից: Քարայրը գնալով ավելի ու ավելի էր մթնում: Այժմ արդեն ամեն մի նոր քայլ գցելուց առաջ Դավիթը ոտքով զգուշորեն զննում էր ճանապարհը: Այդպես նա հասավ մինչև շրջադարձը: Միջանցքը տանում էր դեպի աջ, կորչելով անթափանց խավարում: Դավիթը ետ դարձավ:

Մի ժամ հետո նորից շտապում էր դեպի բլուրը, բայց արդեն ոչ մենակ: Ճարպկորեն նեղ սողոսկելով, նա, հոր ձեռքը բռնած, քայլում էր առջևից, առաջնորդելով նրան դեպի քարայրը և իրեն զգալով որպես փորձված ուղեկցող:

— Հիմա պետք է մոմը վառել,— ասաց տղան ճանապարհի շրջադարձման տեղում:

Անցուղին աստիճանաբար լայնանալով շուտով նրանց առաջ բացեց մի իսկական ստորերկրյա դահլիճ:

— Նայի՛ր, հայրի՛կ,— բղավեց Դավիթը.— Նայի՛ր:

Հայրը վեր բարձրացրեց մոմը և նրա թրթռացող լույսի տակ քարե խոշոր զանգվածի վրա ինչ-որ տարօրինակ գծեր տեսավ: Դա մամոնտ հիշեցնող մի փորագիր նկար էր: Մինչ հայրը զարմացած կանգ էր առել, որդին արդեն նրան առաջ էր կանչում:

— Այստեղ նույնպես նկար կա, այստեղ էլ...

Քարայրը մի իսկակա՛ն պատկերասրահ էր: Քառասունից ավելի ուրվանկարներ զարդարում էին նրա պատերը: Այնտեղ կային և՛ մամոնտներ, և՛ բիզոններ, և՛ զարմանահրաշ ձկներ, և՛ վայրի ձիեր: Դրանք մեր հեռավոր նախնիների ձեռքի գործերն էին:

Այդ հնագույն ժամանակներում մարդու գլխավոր զբաղմունքը որսորդությունն էր: Դրանով էին նրանք հայթայթում և՛ ուտելիք, և՛ հագուստ: Եվ զարմանալի չէ, որ այդ նկարներում պատկերված էին կենդանիներ, որոնց որսացել է նախնադարյան նկարիչը:



# ԶԱՐՄԱՆԱԼԻ ՄԱԶԸ

Ես կովկասյան ծովափ եկա ընդամենը մի շաբաթով. ազատ ժամանակ եղավ, և ես ցանկացա մի քիչ հանգստանալ, տաքանալ հարավային ջերմ արևի տակ, ծովում լողանալ: Հյուրանոցում համար վերցնելուց հետո, միանգամից լողափ գնացի:

Մայիսի կեսերին հանգստացողները դեռ քիչ են: Իմ կողքին մի տղամարդ էր պառկած, որի դեմքը չէի տեսնում: Նա թերթ էր կարդում: Բայց ահա նա իր կողմը շուռ եկավ, և ես ճանաչեցի իմ հին բարեկամին՝ Իվան Պետրովիչին: Մի ժամանակ մենք համալսարանում միասին էինք սովորում, բայց վերջին տասը տարում ես նրան չէի տեսել: Հանդիպումն ուրախալի էր: Մենք հիշեցինք նախկին ծանոթներին, համալսարանը, հետաքրքրվեցինք, թե մեզանից ով ինչի վրա է աշխատում:

— Ուզո՞ւմ ես, — ասաց Իվան Պետրովիչը, — ես քեզ հիմա մի բան ցույց կտամ: Արի գնանք մեր գործարանը, հավանաբար, դու մեր գործարանի մասին ոչինչ չես լսել:

— Այո՛, — ազնվորեն խոստովանեցի ես, — ոչինչ չգիտեմ: Իսկ ինչո՞վ եք դուք ձեր գործարանում զբաղվում:

— Դե, եղբայր, կյանքից ետ ես մնացել: — Եվ Իվան Պետրովիչը սկսեց պատմել: — Հիշո՞ւմ ես արգոնավորդների առասպելը: Յազոնի հետ նրանք հեռավոր Կոլխիդա մեկնեցին ոսկե գեղմը բերելու: Բայց ոսկե գեղմ ասելով հին հույները ոչ թե ոսկի նկատի ունեին, այլ՝ հարուստ, բարեբեր երկիր, որտեղ բարձր կուլտուրայով օժտված մարդիկ ապրում էին առատության և երջանկության մեջ: Իսկ հիմա մենք այդ առասպելին նայում ենք ինչպես կենդանացած հեքիաթի: Մեր գործարանը, իսկապես ոսկե գեղմ է: Մենք այստեղ ոսկի ենք արդյունահանում:

— Սպասիր, — նրան ընդհատեցի ես: — Ի՞նչ ոսկու մասին է խոսքը: Կովկասն, իհարկե, հարուստ երկրամաս է, այստեղ շատ օգտակար հանածոներ կան, բայց Սովետական Միության ոսկեբեր շրջանները, ինչքան գիտեմ, հանդիսանում են Ուրալը, Լենայի ավազանը, Անդրբայկալը, Մագադանը:

— Դե դրանք հանքեր են, — ժպտաց Իվան Պետրովիչը: — Իսկ մենք ոսկին ջրից ենք ստանում:

— Այդ ո՞ր ջրից:

— Սովորական: Դուցե և ոչ այնքան սովորական. ուղղակի ծովային ջրից: Իսկ քեզ, հավանաբար, հայտնի է, որ ծովի ջուրը ոսկի է պարունակում:

— Հայտնին՝ հայտնի է, բայց ինչքա՞ն է այդ ոսկին:

— Այնքան էլ քիչ չէ, — պատասխանեց Իվան Պետրովիչը: — Ճիշտ է, մի տոննա ջուրը ընդամենը գրամի չորս միլիոներորդական մասի չափ է ոսկի պարունակում: Բայց եթե հաշվենք, ապա համաշխարհային օվկիանոսից կստացվի ընդամենը, — նա նորից ժպտաց, — մոտ ութ միլիարդ տոննա ոսկի: Ահա թե մենք ինչու ենք աշխատում:

Շուտով մենք մոտեցանք «գործարանին»: Բայց դա այն չէր, ինչ ընդհանրապես պատկերացնում են «գործարան» ասելով: Դա բավականին ինքնատիպ բան էր: Հսկայական, մինչև քսան մետր տրամագիծ ունեցող, թեք դրված խողովակներ կային և մեկ էլ գետնին կպած բավականին մեծ մի շենք և ուրիշ ոչինչ:

— Դե, ինչպես է, — Իվան Պետրովիչը շուռ եկավ իմ կողմը:

Ես չէի կարողանում թաքցնել զարմանքս և շփոթված այս ու այն կողմ շուռ գալով, աչքերս էի թարթում:

Իվան Պետրովիչը սկսեց բացատրել.

— Այստեղ, մեզ մոտ լրիվ ավտոմատացված է: Ընդամենը տասներկու մարդ է աշխատում: Այս կորպուսը բաշխիչ կայանն է: — Նա ձեռքը պարզեց դեպի գետնին կպած շենքը: Պոմպերը ծովի ջուրը մղում են խողովակների մեջ, որտեղից ջուրը թափվում է մի քանի կիլոմետր հեռավորության վրա, իհարկե, արդեն առանց ոսկու: Ոսկին լրիվ մնում է այս հսկա սյուների մեջ: Ժամանակ առ ժամանակ մենք ծովի ջուրը մի ուրիշ սյան մեջ ենք ուղարկում, իսկ նախորդի միջից հանում ենք ոսկին: Այս է ամենը:

— Լսիր, — չհամբերեցի ես: — Մի անգամ չէ, որ ես եղել եմ ոսկեբեր հանքերում և տեսել եմ, թե ինչ դժվար աշխատանք է ոսկու արդյունահանումը: Իսկ այստեղ՝ ձեզ մոտ կարծես կուրորտ լինի: Գուցե դու բացատրես, թե ինչու ոսկին մնում է այդ խողովակների մեջ:

— Ախր սրանք հասարակ խողովակներ չեն: Սրանք քիմիական մազեր են: Ոսկին մնում է մազի մեջ, իսկ մնացած բաները ջրի հետ անցնում են: Ահա և բոլորը: Հասարակ բան է, չէ՞:

Դուք, իհարկե, գլխի ընկաք, որ այս բոլորը երևակայություն է: Բայց միայն այսօր է երևակայություն, այն էլ միայն ոսկու հարցում: Այդպիսի քիմիական մազեր, որոնք պահում են ջրում լուծված աղերը, արդեն հիմա էլ գոյություն ունեն: Շատ չի անցնի և կսկսվի օվկիանոսային ոսկու քիմիական արդյունահանությունը:



25. Հյուսիսային բևեռի անվանումը: 26. Մեծ ու փոքր սառցադաշտեր, որոնք իջնում են Էլբրուսի հարավային լանջից: 29. Նորվեգացի նշանավոր ճանապարհորդ, հայերի ջերմ բարեկամը: 30. Կիրովաբադի հին անվանումը: 31. Շրջանի կամ ավանի անվանումը՝ հին Հայաստանում: 33. Պատմական վայր՝ հին Հայաստանում: 34. Քաղաք՝ Յարոսլավլի մարզում:

*Առաջարկ՝ ՍՈՒՐԵՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ*

## ՄԻ ԱՆԳԱՄ ԱՆԱՊԱՏՈՒՄ

*Մի անգամ Գագիկենց հյուր եկավ քեռի Հովսեփը: Գագիկը, որ շատ էր լսել նրա որսորդական արկածների մասին, խնդրեց մի բան պատմել: Քեռին չմերժեց:*

*— Տարիներ առաջ, երբ դեռ Ղազախստանում էի, մի օր ես ու ընկերս գնացինք Կարա-Կում՝ փղեր որսալու: Երեք օր չարչարվեցինք, բան չստացվեց: Չորրորդ օրը ուղտերը չդիմացան, ծարավից սատկեցին: Մեր վիճակը ծանրացավ, քայլելն ավելի դժվարացավ: Որոշեցինք ետ դառնալ: Մեկ էլ հանկարծ մեր ականջին հասավ ինչ-որ ձայն, որ գալիս էր կանաչ թփերի մոտից: Զգուշորեն մոտեցանք, ականջ դրինք, ձեն-ձուն չկար: Մեր առջև գետն էր՝ Ամու-Դարյան, իր մեղմ ու խաղաղ, հստակ ու թափանցիկ ջրերով: Գետի ջուրը հրապուրեց մեզ: Մի լավ լողանալուց հետո պառկեցինք սաքսաուլի ծառերի հովանու տակ՝ հանգստանալու: Դեռ չէինք հանգստացել, մեկ էլ հանկարծ ինչ տեսնենք. մի մեծ նապաստակ ականջները խլշած ջուր է խմում գետից: Մտածելու ժամանակ չկար, սոված էինք: Հարձակվեցինք խեղճ կենդանու վրա, մորթին քաշեցինք ու սկսեցինք խորովածի պատրաստությամբ զբաղվել: Երբ կերանք-կշտացանք, ճամփա ընկանք դեպի տուն:*

*— Ասում Հովսեփ, բախտներս բերեց, տեսնում ես ինչ լավ ճայեր են, — ասաց ընկերս, ցույց տալով ճամփեզրի ծառերին թառած թռչուններին, — բա չխփե՞նք:*

*— Չէ, կրակել պետք չի, — ասացի ես, — քարով էլ կխփես, կսպանես:*

*Ու խոսքս դեռ չէի ավարտել, երբ նա երեք քարով երեք ճայ գցեց: Այդպես էլ առանց վառոդ որսալով տուն հասանք:*

*Երբ որսորդն ավարտեց պատմությունը, Գագիկն ասաց.*

*— Այդպիսի շարադրության համար ձեզ կարելի է «երկու» նշանակել, քեռի:*

*— Ինչու:*

*— Որովհետև ձեր պատմության մեջ շատ սխալներ կան:*

*Կարո՞ղ եք ասել, թե որոնք են այդ սխալները:*

*Կազմեց՝ ԽՈՐԵՆ ԴԱԴՅԱՆԸ*





Առաջին նկարը, որ կոչվում է «Լավինիայի դիմանկարը» պատկանում է իտալացի խոշորագույն մի նկարչի վրձնին, որը վենետիկյան դպրոցի ամենախոշոր ներկայացուցիչն էր: Նա համարվում է Վերածննդի դարաշրջանի ամենաաչքի ընկնող ներկայացուցիչներից մեկը, որի ստեղծագործությունները շնչում են մարդասիրական վեհ գաղափարներով:

Ո՞վ է այս նկարի հեղինակը, ո՞ր դարում է ստեղծագործել և ուրիշ ի՞նչ աշխատանքներ գիտեք նրանից:

Շատ ծանր ճակատագիր է ունեցել «Դպրոցականի դիմանկարի» հեղինակը: Նա հոլանդացի նկարիչ է, բայց սովորաբար նրան ներկայացնում են ֆրանսիական իմպրեսիոնիստների հետ, որովհետև իր ստեղծագործությամբ սերտորեն կապված է այդ ուղղությանը:

Նկարել սկսել է երեսուն տարեկան հասակում և կարճ ժամանակամիջոցում կարողացել է այնքան գործեր ստեղծել, որոնք հիմա սփռված են աշխարհի նշանավոր բոլոր պատկերասրահներում:

Ո՞ւմ վրձնին է պատկանում «Դպրոցականի դիմանկարը»:

20 կ.

ինդեքս 77806

ՍԱՏԱՆԱՆ ՈՒ ԾԱՂԻԿՆԵՐԸ

ՆԱՐՈՅԱՆ ՍՅՈՒԶԱՆ

(Երևան, 6 տարեկան)

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ԱՄԵՆԱՓՈՔՐԵՐԸ



ՏՈՒՆ

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ՌՈՒԶԱՆ

(Երևան, 5 տարեկան)



ՇԱՄԱԽՅԱՆ ԱՆՆԱ

(Երևան, 6 տարեկան)